# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱ-ԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 2•87



*Հանձնված է տպագրության 02.XII. 1986 թ.։ Ստորագրված է տպագրության 20.01. 1986 թ.։ ՎՖ 02132։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 68632։ Պատվեր՝ 2249։ Գինը՝ 15 կոպ.։*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։*

Сдано в набор 02.12.86 г. Подписано к печати 20.01.87 г. Формат 70×100 1/16. ВФ 02132. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 68632. Заказ 2249. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



# Հայաստանի լենինյան կոմունիստական երիտասարդական միության XXX համագումար

Դասավարտի զանգը վաղուց հնչել էր, և օրվա աղմուկից հոգնած դպրոցական միջանցքները լուռ էին: Իսկ դասասենյակներից մեկում պարապմունքը շարունակվում էր: Մեկ տասնյակ հոկտեմբերիկներ լուռ, կենտրոնացած աշխատում էին, երբեմն միայն դիմելով նրան.

— Ընկեր Տաթև, հիմա լա՞վ է:

— Ես արդեն վերջացրի, խնդրում եմ նայեք:

— Սա մեր ծաղկահարդարման խմբակն է,— ներկայացնում է դպրոցի դիրեկտոր Սուսաննա Խարազյանը,— անդամները՝ դպրոցի առաջին դասարանցիները, որոնց հետ շաբաթը մեկ անգամ պարապմունքներ է վարում մեր աշակերտուհին՝ Տաթև Խնոյանը:

— Նրանից մենք այնքա՜ն բան ենք սովորել,— ասում է Անահիտը:

— Ընկեր Տաթևը մեզ համար հաճախ է պարապմունքների ընթացքում բանաս-

տեղծություններ արտասանում,— ավելացնում է Ռուզաննան,— նա հանախում է Ղուկաս Ղուկասյանի անվան քաղաքային պիոներպալատի ասմունքի խմբակի պարապմունքներին:

Տաթև Խնոյանը, պատանի բարեկամ, քո հասակակիցն է: Սովորում է Երևանի № 75 դպրոցի ութերորդ դասարանում, ուսման գերազանցիկ է: Դպրոցում նրա մասին բոլորն են սիրով խոսում, իսկ դասընկերների ձեռքից ուղղակի «պրծում չունի»: Պետք է նոր դասը մեկ անգա՞մ էլ բացատրել՝ պատրաստ է: Ինչ-որ բան չի՞ ստացվում, անհանգստանալ չարժե, Տաթևը կօգնի: Ասենք, այլ կերպ չի էլ կարող լինել, իսկական ընկերն հենց այդպիսին պիտի լինի: Եվ բացի այդ, Տաթևը նաև դասարանի նորաստեղծ կոմերիտական կազմակերպության քարտուղարն է: Ճիշտ է, կազմակերպությունը փոքր է, առայժմ հինգ անդամ ունի, բայց գործերը շատ են, և ոչ մի հարց չի կարելի աչքաթող անել կամ հետաձգել: Ուսման առաջադիմության հարցը՝, օրինակ: Տարեսկզբին «սայլը տեղից չէր շարժվում»: չէր: Այդ ձևով շարունակել այլևս չէր կարելի:

— Առաջարկում եմ դասարանը բաժանել երկու խմբի,— քառորդի արդյունքը-Կարգապահությունն էլ կարծես թե այն



ներն ամփոփելու առիթով հրավիրված դասարանական ժողովի ժամանակ ասաց նա,— խմբերի միջև մրցակցություն կլինի և՛ ուսման, և՛ կարգապահության, և՛ հասարակական աշխատանքներին լավագույն ձևով մասնակցելու, իսկ քառորդի վերջում յուրաքանչյուր խմբի ավագ հաշվետվություն կներկայացնի, թե ինչ արդյունքների են հասել:

Հետաքրքիր առաջարկություն էր, Հրբայրն ու Ալվարդն էլ պաշտպանեցին: Իսկ վերջերս, երբ ամփոփվում էին երկրորդ քառորդի արդյունքները, արդեն ուրախացնող շատ բան կար: Իսկ ինչքա՜ն հետաքրքիր անցավ «Մեկ ժամ Ստեփան Շահումյանի հետ» ցերեկույթը: Իհարկե, երկար էին նախապատրաստվել, հավատարիմ լենինյանի մասին գրքեր էին հավաքել, Տաթևն էլ գրեց միջոցառման սցենարը: Դպրոցում ցերեկույթն ավարտելուց հետո այցելեցին անանկուն հեղափոխականի հուշարձանին: Այդ օրվա պատմությունն այժմ ամփոփված է իրենց դասարանում պահվող մի ալբոմում, որ իրենք են կազմել ու ձևավորել: Եվ ամենակարևորն այն է, որ նրանք արդեն գիտեն. ամեն լավ բանի էլ կարելի է հասնել առաջին հերթին համերաշխությամբ և կարգապահությամբ:

Տաթև Խնոյանի կոմերիտական կենսագրությունը ամիսներով է հաշվվում: Նա լենինյան կոմերիտմիությանն անդամագրվել է 1986 թվականի մարտ ամսից: Իսկ տարեվերջին, ըստ արժանվույն գնահատելով նրա աշխատանքը, ընկերները նրան ընտրեցին ՀԼԿԵՄ Լենինյան շրջանային 80-րդ կոնֆերանսի պատգամավոր:

Հիմա Տաթև Խնոյանը մեկ հասարակական հանձնարարություն էլ ունի. կոնֆերանսում նա ընտրվեց շրջկոմի բյուրոյի անդամ և ընդգրկվեց սովորող երիտասարդության հարցերով զբաղվող հանձնաժողովի կազմում: Նույն կոնֆերանսում դասարանական կոմերիտական կազմակերպության քարտուղարն ընտրվեց ՀԼԿԵՄ 80-րդ համագումարի պատգամավոր: Այդ ամենն, անշուշտ, պարտավորեցնող է: Իսկ Տաթև Խնոյանը վստահ է նայում վաղվա օրվան:

Տիգրան ՆԻԿՈՂՈՍՅԱՆ

# Ապրում է. աշխարհում մի դասարան



Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

Ցուրտ է: Ոտնահետքերից մաշված ճանապարհը՝ ամեն անցնող-դարձողից մի փշուր ջերմություն պահած, շատ է ծանոթ: Մենք շտապում ենք, ուզում ենք տաքանալ, զրուցել, պատմել, խորհրդակցել: Մենք՝ № 56 դպրոցի նախկին աշակերտներս՝ ոմանք արդեն ամուսնացած, հայրեր, մայրեր, մի խոսքով՝ լուրջ, հասուն մարդիկ: Ու գնում ենք մեր դասղեկի տուն՝ թեյ խմելու:

Տղան կանգնել էր դռան առաջ և վարանում էր սեղմել զանգի կոճակը: Վիճել էր ընկերուհու հետ, ժամերով թափառել փողոցներում ու, ինքն էլ չիմանալով ինչպես, հայտնվել ուսուցչուհու տան մոտ: Զարմանալի բան՝ թե՛ ինքը, թե՛ ընկերները, եթե որևէ վատ արարք էին թույլ տալիս, առաջին հերթին գալիս էին ուսուցչի մոտ: Խոստովանելու: Ամաչելու, ներվելու: Այլևս չսխալվելու: Եթե ինչ-որ լավ բան էր լինում, էլի ուսուցչի մոտ էին գալիս՝ կիսելու ուրախությունը: Եվ այնքա՛ն չէին ուզում վշտացնել իրենց դասղեկին, որն առաջին դասարանից իրենց կողքին էր, ապրում էր իրենց հետ ու իրենց համար:

Ծնողներն իրենք էլ հաճախ գալիս էին ուսուցչի մոտ, տնից, աշխատանքից էին խոսում, երեխաների հետ կապված մտահոգությունները էին կիսում: Ուսուցիչն ասում էր, որ ծնողներն իր առաջին օգնականներն են և, որպեսզի իր սաները խորապես հարգեն ու գնահատեն նրանց աշխատանքը, հաճախ հանդիպումներ էր կազմակերպում ծնողների աշխատավայրերում: Ծնողներն ավելի հեշտ էին հասկանում երեխաներին, երեխաները՝ ծնողներին: Ուսուցիչը կապող օղակ էր նրանց միջև: Եվ այսպես ապրում էր աշ-

խարհում մի դասարան:

... Տղան այս ամենը հիշեց մի ակնթարթում ու սեղմեց դռան զանգի կոճակը:

Վաղ առավոտյան նա ընկերուհուն էլի կսպասի շքամուտքի մոտ, պայուսակի մեջ թաքցրած ծաղիկը, որ ուսուցչի անեցրածըն է, կմեկնի նրան, ու հաշտությունը կկայանա: Դպրոց տանող ճանապարհին նրանց կմիանանք մենք՝ դասարանի մյուս 28 աշակերտներս, և կշտապենք հանդիպելու մեր երեսունմեկերորդին: Դպրոցի միակ լուսավորված պատուհանով դասասենյակում մեզ կսպասի նա: Եվ մինչև դպրոցական զանգի հնչելը մենք կհասցնենք այնքան նոր բան իմանալ Դոն Քիշոտի, փոքրիկ իշխանի, Չարենցի, Տերյանի, Թումանյանի մասին: Այսպես, տարիներ շարունակ մենք կգնանք գտնելու լուսավորված պատուհանով դասասենյակը, և օրը կսկսվի առավոտյան ժամը յոթի





բարության, լույսի ու իմաստության դասերով: Մի յուրօրինակ «Առավոտ լուսոյ», որին կհաջորդեն գեղեցիկ ու հետաքրքիր նոր գործեր՝ մասնագիտական կողմնորոշմանը նվիրված միջոցառում, դիմակահանդես, գրական վիկտորինա, աշխատանքի տոն:

Մեր դասարանում օրը դպրոցական վեց դասաժամով չէր ավարտվում: Դասերից հետո դասղեկի հետ գնում էինք ցուցահանդես, կինո, թատրոն, հաճախ էլ պարզապես թափառում էինք, որովհետև բոլորս էլ շատ էինք սիրում վարդաջրով լողացած մեր քաղաքը, ուր մեր տունն էր, մեր դպրոցը, մեր դասարանը:

Ամեն ինչում մենք փորձում էինք մեր ուսուցչից օրինակ վերցնել: Ուզում էինք նրա նման կարել ու ասեղնագործել, լավ նկարել, իսկ ինչպիսի՜ համեղ ճաշեր էր պատրաստում, երբ հավաքվում էինք նրա տանը: Երբ մեզ համար դժվար էր լինում, միշտ մեր կողքին էր նա՝ ամենա-ամենալավագույն ավագ ընկերը՝ մեր դասղեկը:

«Երջանկությունն այն է, երբ քեզ հասկանում են»,— հետո, երբ երջանկության մասին շարադրություն էր հանձնարարում, գրում էինք մենք:

...Ինչքան էլ ուզում էինք բոլորով մնալ նույն դասարանում՝ չստացվեց: Մնաց միայն մեկը... մեր ուսուցիչը: Ավարտեցինք ու դպրոցում վերցրած էստաֆետը՝ գերազանց սովորելու, ակտիվ հասարակական կյանքով ապրելու, շարունակվեց ԲՈՒՀ-ում: Դասարանը մնաց առաջվա նման համերաշխ ու միասնական:

Ինչո՞ւ եմ պատմում այս ամենը: Ուզում էի ուսուցչի դիմանկար ներկայացնել, բայց ավելի շատ ստացվեց պատմություն մի դասարանի մասին: Պատմում եմ, որովհետև ուսուցչի դիմանկարը նրա աշակերտներն են: Եվ եթե այսօրվա դըպրոցականը վաղը լավ մասնագետ է դառնում, լավ ամուսին, լավ ծնող, մի խոսքով՝ հասարակությանը պիտանի մարդ, «մեղավորը» մեկն է՝ ուսուցիչը: Որովհետև մարդը գալիս է իր մանկությունից: Իսկ երկար մանկություն ունեցող մարդիկ անպայմանորեն լավն են լինում: Այդ մանկության պահապանները մեր ուսուցիչներն են:

Ցուրտ է: Ճանապարհն իր մեջ պահում է մեր մանկության, պատանության, երիտասարդության ոտնահետքերը: Դպրոցականի խենթությամբ ու աղմուկով լըցվում ենք շքամուտք, սեղմում դռան զանգի կոճակը: Դռան շրջանակի միջից մեզ ժպտում է նա՝ Երևանի № 56 դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Լյուբա Մուրադյանը:

ԳՈՀԱՐ ՕՀԱՆՅԱՆ

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

# Եվրաշկալայի ձորում

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Տայգայի անկենդան լույսը նման էր վերջալույսից հետո անդրադարձող ստվերազուրկ լուսաշողի, որին մեզ մոտ՝ հարավում, մեռելի արև են ասում: Երբ հանգավ նաև այդ լույսը, թանձր խավարը պատեց տայգան: Կանգնեցի, մի պահ նայեցի շուրջս, և ինձ թվաց, թե ինչ-որ մի մեծ բան անցավ տայգայի վրայով և ընկավ Եվրաշկալայի ձորը:

Ես արդեն տայգայի բնակիչ էի և գիտեի, որ երբ անհասկանալի մի բան է տեղի ունենում տայգայում, նրանից փախչել չի կարելի, և առհասարակ տայգայում փախչել չի կարելի, պետք է գնաս դեպի անհասկանալին: Փախուստը տայգայում մահ է: Բևեռային գայլն ընկնում է միայն փախչողի ետևից: Երկչոտ նապաստակն անգամ ընկնում է իրենից փախչող գազանի ետևից: Կալիմբետ ազգանունով մի ընկեր ունեի, գիշերվա կեսին Բերելյոխից Սուսուման գնալիս, ինքն էլ չէր իմացել, թե ինչու, սիրտն ահ էր ընկել (կարծեմ թըփուտների մեջ կրակների նման վառվող աչքեր էր տեսել), և, որովհետև ճանապարհի կեսից ավելին արդեն անցած է լինում, էլ ետ չի դառնում, փորձում է վազելով անցնել ճանապարհի մնացած մասը: Երբ վազելով հասնում է Սուսումանի առաջին տներին, ետ է նայում, տեսնում է, որ երկու բրդոտ գազան կրնկակոխ գալիս են իր ետևից, և քիչ է մնում, որ հասնեն իրեն: Աղաղակում, օգնություն է կանչում: Այդ պահին մի թփի տակից դուրս է ցատկում ռուսակ տեսակի մի նապաստակ և վախից չկողմնորոշվելով, վազում է դեպի Կալիմբետին հետապնդող գազանները: Վերջիններս տեսնում են, որ իրենց վրա եկող կա, թեքվում և փախչում են դեպի Մորժոտ լեռը: Այդ ժամանակ միայն Կալիմբետը տեսնում է, որ իր ետևից վազող գազանները վայրի քարայծեր են եղել:

Ես չփախա, երբ տեսա ձորն իջնող մեծ ստվերը, քայլեցի դեպի Եվրաշկալայի ձորը: Ձորը դեռ չիջած, հանկարծ դեմս ելավ մի գեղեցիկ, ծով աչքերով եղնիկ: Այնքան գեղեցիկ ու անսպասելի էր ինձ համար այդ հայտնությունը, որ ես հրացանս էլ ուսիցս չիջեցրեցի: Նա նայում էր ինձ իր անթարթ, վճիտ հայացքով... Ես քարացա և չհասկացա, թե ինչպես եղավ, որ նա սպիտակ ստվերի նման չքացավ աչքիս առջևից:

Դրանից հետո երկար ժամանակ թափառեցի տայգայում, գիշերն անցավ, նորից գիշեր եկավ, իսկ ես այդ տեղերից հեռանալ չէի կարողանում, ինչ-որ բան կորցրած մարդու նման փնտրում էի կորցրածըս. կարծես ձեռքիցս ընկավ, այստեղ պետք է լիներ և չկա: Իհարկե, ամենակուլ ժամանակը, ամեն ինչ բուժող ժամանակը բուժեց նաև ինձ, բայց այդ եղնիկը մընաց իմ հիշողության մեջ, որպես հանգչող, անկենդան, անստվեր լույսի մի շող: Այս գուցե աննշան դիպվածը փոխեց իմ կյանքի ընթացքը: Այդ օրվանից Եվրաշկալայի ձորը ինձ համար դարձավ նվիրական մի վայր, իմ և նրա միջև հոգեկան մի կապ ստեղծվեց, դարձավ կենսագրությանս հիշարժան էջերից մեկը: Շուտով այդպիսի մի կապ էլ ստեղծվեց իմ և Տանգարա լըճակի միջև, Տանգարան էլ դարձավ ինձ համար հարազատ, սիրելի, ինչպես Լուկիչ ավանը: Եվ քանի գնում, այնքան ավելի էին շատանում ինձ համար հարազատ, սիրելի դարձած վայրերը, և թվում էր ինձ, թե ես տանն եմ: Այդպես են ընտելանում մարդիկ իրենց նոր տեղերին: Եթե մարդը չունենար հիանալու, սիրելու զգացումը՝ ապրել չէր կարող, իր տեղը չէր ունենա այս հողագնդի վրա:

— Ճերմակ կաքավները, սկյուռները, գայլերը, արջերն ու քարայծերը և նույնիսկ ծաղիկներն ու կիրճերում փչող քամիներն իրենց սիրած տեղերն ունեն այս աշխարհում, սերն է աշխարհը պահողը,— ասում էր չուկչի որսորդը իր սիրած աղջկան,— եթե սերը չլիներ, ամեն տարի հազարավոր կիլոմետրեր չէին անցնի սագերի, կարապների, բադերի երամները: Այս հսկա, անընդգրկելի բնության մեջ իրենց սիրելի ապրելատեղերն են ընտրում բոլոր ապրողները:

Եվ այսպես, երկար տարիներ այդ տեղերում ապրելուց հետո, ես էլ ունեի իմ սիրած վայրերը, որոնց կարոտում էի, որտեղից հեռանալ չէի ցանկանում, որոնք

հարազատ էին ինձ հայրենիքիս, ծննդավայրիս նման։ Այդպես է նաև բոլոր կենդանիների համար, նույնիսկ կենդանական այն աշխարհի համար, որը շնչում, սնվում, ապրում է, բայց իր տեղից շարժվել չի կարողանում՝ ծառերը, ծաղիկները... Ես սիրում էի Սրեդնիկանը, որի ափերին մի օր լսեցի Մարիա Իվանովնա Տոպարկինի կատարած արիան «Տոսկա» օպերայից։ Սիրում էի Յագոդնին, որտեղ հանդիպեցի հնագետ Սեդրակ Բարխուդարյանին և պարարվեստի սքանչելի վարպետ Վահրամ Արիստակեսյանին, փոթորկածին Բույունդան, բայց ամենից շատ սիրում էի տայգայի վրայով թռչող-չվող թռչունների երամները։ Երբ լսում էի նրանց կռինչները, սիրտս ամրանում, հոգիս խաղաղվում էր, բարի և համբերատար էի դառնում։ Ջվող սագերի և բադերի երամները, որ իջնում էին Տանգարայի ջրերին, կարծես ինձ համար էին իջնում։ Ես բնության մարդ էի դարձել։ Քաղաքն իր քաղաքակրթությամբ արդեն օտար էր ինձ, հեռավոր, մոռացվող մի անցյալ։ Տայգան շատ սիրեցի, ես ինձ տայգայի որդին համարեցի։ Իսկ եթե զավակը մոր մոտ է, ուրեմն տանն է։ Հիմա, երբ արդեն հեռու եմ տայգաներից, որպես այրող մի կարոտ, անմարելի մի հուշ է մնացել հոգուս մեջ, որը ստիպում է ինձ անթարթ աչքերով նայել վաղ գարնան և ուշ աշնան անհանգիստ երկնքին, ունկնդրել չվող թռչունների եկող կամ հեռացող երամների կռինչներին։ Իր ժամանակին, երբ հեռու էի իմ ծննդավայրից, այդ կռինչները հույս և հավատ էին ներշնչում ինձ։ Թվում էր, թե ես էլ նրանց հետ երամի մեջ մի թռչուն եմ թևածող և վերևից եմ նայում թևերիս տակ փռված աշխարհին։ Տեսնում էի, թե ինչպես են ազատվում լճակները սառույցներից, ինչպես են



բացվում գետերը, ինչպես են գետերի խառնարաններում իրար վրա բարձրանում, կուտակվում ջրահոսքի բերանն ընկած սառույցները։ Եվ իմ թևերն էլ սագերի թևերի նման հոգնում էին, թռիչքիս թափն ընկնում էր։ Ես էլ էի լսում առաջնորդ սագի կռինչը.

— Դիմացեք,— ասում էր նա,— քիչ մնաց, շուտով մեր առջև բացվելու են Մորժոտ սարի գագաթները։ Լուսաբացից առաջ վայրէջք ենք կատարելու Բերելյոխի հովտում։ Բարձրացրեք ձեր կախված պոչերը։

— Հիմա նայեցեք ձախ, երկու վտակների միջև ընկած կեչիների լայնաշերտ պուրակին, որից հետո երևալու է գետի ավազոտ ափը, շատ մանր և տաք ավազ ունի այս ափը։ Գետի այս ափը ամենաապահովն է մեր վայրէջքի համար՝ քամիներ չկան, մարդը դեռ այստեղ ոտք չի դրել, կարող եք հանգստանալ, սնվել, իսկ եթե հանկարծ մեր ճանապարհին ամպեր կուտակվեն, կայծակներ հայտնվեն, կմնանք այստեղ մինչև երկինքը պարզի։ Ապա նայեք աջ։ Տեսնո՞ւմ եք ձյունածածկ լեռների գագաթները։ Այս ձյունը երբեք չի հալվում, այստեղից են սկիզբ առնում լեռնային վտակները, նրանց մեջ փոքրիկ ձկնիկներ են լինում, համեղ խարիուսներ։ Հետևեք իմ թռիչքին, շարքը չխախտենք։ Հիմա Մորժոտ լեռան ետևից կհայտնվի լուսինը։

Երամը շարունակում էր իր գիշերային չուն, նրա հետ թռչում էի նաև ես։ Ինձ այդպես էր թվում։ Երբ լուսինը պռունկը Մորժոտ սարի ետևից դուրս հանեց, երամի առաջնորդ սագը թևերը թափահարեց՝ կարծես մութը թևերից թոթափելու համար, նայեց ետևից եկող եռանկյունաշար ընթացքին և խուլ ձայնով ասաց.

— Պատրաստվեցինք վայրէջքի։

Մի պահ եռանկյունին խախտվեց, մենք էլ հետևեցինք նրա օրինակին՝ թևներս թափտվեցինք, կարծեք ես էլ էի պատրաստվում վայրէջքի։ Բայց ի՞նչ կապ կարող էր լինել իմ՝ հողակյաց մարդուս, և այս երկնագնաց թռչունների միջև։ Գուցե ես էլ հազարավոր տարիներ առաջ մի սագ եմ եղել և, իսկապես, թռել եմ երամի հետ ու հիմա ինչ-որ ձևով զգում եմ, հիշում այդ։

Հիմա ես հեռու եմ, շատ եմ հեռու տայգաներից։ Հիմա իմ երկնքով չվող թռչունների երամներ չեն անցնում։ Հիմա այլևս չեմ լսում սագերի ու բադերի կռինչները, բայց սպասում եմ, սպասում եմ տարիներով՝ ականջ պահած երկնքի գիշերային ձայներին։ Ինչո՞ւ եմ սպասում, ինչի՞ եմ սպասում՝ չգիտեմ։ Մի՞թե չվող թռչունների երամները կարող են անցնել այս մեծ քաղաքի երկնքով... Ես թողել եմ իմ անցած ճանապարհին սիրելի, հարազատ մարդկանց, թողել եմ ձյունախառն բուք ու բորան, սառնամանիքներ, կարկտաբեր մթին ամպեր, որ իջնում, նստում էին արահետներին, որից թրջվում էին իմ ծնկներն ու ոտքերը։ Ես թողել եմ գարնան սկզբին մեծ գետերից դեպի լեռնային վտակների ակունքները բարձրացող արյունակող, հոգնած սապատավոր ձկների, կետաձկների վտառները, որոնք շտապում էին ձկնկիթ դնել մաքուր, պարզ ջրերում։ Թողել եմ ձմռան սառնամանիքներում սև մոմերի նման անշարժացած դարավոր կեչիները և ամբողջ գիշերը կարծեք երկունքի ցավերից տառապող սառցալեռների որոտները։ Թողեցի ձյունից էլ ճերմակ կաքավներին, խելացի, զգույշ խլահավերին, բրդոտ շատակերիկներին ու բևեռային գայլերին, սև աղվեսներին, բուռունդուկներին, սկյուռներին, ուշիմ եղնահավերին. այդ սառած, անկյանք թվացող երկրում, հավիտենական ձյուների մեջ, ջերմ, տաք կյանք կա, փոթորկվող սրտեր, համարձակ, ազնիվ հոգիներ, սիրող ու ջերմացնող հայացքներ։ Եվ այս բոլորի մեջ ինձ ամենից շատ հուզել և տագնապ են պատճառել չվող թռչունների անկյունաշար երամները, որ անցնում էին մթնող երկնքի վրայով, անցնում էին բարձրից։

Այստեղ, իմ այս մեծ քաղաքի երկնքից մեկ անգամ միայն, կեսգիշերին լըսեցի չվող թռչունների կռինչները, կանգ առա, գլուխս վեր բարձրացրի կույր մարդու նման, արձանացա տեղումս։ Սագերի երամ էր անցնում, անցնում էր շատ բարձրից... Ինձ թվաց, թե դա սովորական մի պատրանք էր, մի սուտ կռինչ քարե քաղաքի բետոնե անցումների նեղ լաբիրինթներում։ Ի՞նչ իմանաս, գուցե հիմա նրանց չուն անցնում է իմ հիվանդ սրտի կարծրացած ծալքերով և իրական չէ։ Այն, ինչը մինչև հիմա իրական է եղել, չի հուզել ինձ այնպես, ինչպես հիմա չվող թռչունների այն անիրական չուն։ Գուցե հիմա իմ կարոտած սիրտն է այդպես երամը կորցրած սագի նման մենակ թռչում երիտասարդական տարիներիս վաղուց արդեն անհետացած արահետների վրայով և ինչ-որ բան է փնտրում, մոռացած, կորցրած մի բան, որն այլևս երբեք չեմ գտնելու։

ԱՐՄԵՆ ՇԵԿՈՅԱՆ

## Քամին անցնում է

Քամին անցնում է կանաչ դաշտերով՝
Կանաչ նժույգներ լծած իր կառքին:
Քամին գալիս է կանաչ վաշտերով
Եվ կանաչ մտրակ ունի իր ձեռքին:

Քամին անցնում է դեղին արտերով՝
Դեղին նժույգներ լծած իր կառքին:
Քամին գալիս է դեղին վաշտերով
Եվ դեղին մտրակ ունի իր ձեռքին:

Քամին անցնում է ճերմակ լեռներով՝
Ճերմակ նժույգներ լծած իր կառքին:
Քամին գալիս է ճերմակ վաշտերով
Եվ ճերմակ մտրակ ունի իր ձեռքին:

Քամին չի հաղթում, հաղթում է դաշտը.
Քամուց ուժեղն այս սիրուն ծաղիկն է.
Դրա համար էլ մեր սիրած մարդկանց
Մենք նվիրում ենք դաշտի ծաղիկներ:

Քամին չի հաղթում, հաղթում է արտը:
Քամին պարտվում է՝ ինչպես և դաշտում՝
Դրա համար է հացն այնքան համեղ:
Դրա համար ենք մենք հացը պաշտում:

Քամին չի հաղթում, հաղթում է լեռը:
Լեռն է շողշողում հզոր ու անպարտ:
Դրա համար է լեռն այնքան սիրուն,
Այնքան սիրելի ու այնքան հպարտ:

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

## Թե ձմեռը ես լինեի

Թե ձմեռը ես լինեի
Կգայի մեղմ փաթիլներով,
Փափուկ-փափուկ կծածկեի
Քաղաք ու գյուղ, անտառ ու ձոր:

Բքին սառցե պարաններով
Կկապեի մի մեծ ժայռից,
Որ չխայթեր մանուկներին
Ձյուների մեջ խաղ անելիս:

Իսկ հենց կիսվեր փետրվարը,
Կմեկնեի ես լուռ ու մունջ,
Ամեն մեկիդ ձեռքում թողած
Ձնծաղիկի մի փոքրիկ փունջ:

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՔԻԱԹ

# Երկու ընկեր

Երկու ընկեր իրար շատ էին սիրում: Մի օր դուրս եկան ճամփորդության: Գնացին, դեմ առան մի բերդի: Տեսան՝ բերդի պարսպից մարդկանց գլուխներ են կախված: Վախվխելով մտան ներս: Ծառան նրանց տարավ թագավորի մոտ: Հյուրերի համար սեղան գցեցին, անուշ խորտիկներով ու գինիներով մեծարեցին: Երբ նրանցից մեկը մի ռոպեով դուրս եկավ, թագավորը մյուսին ասաց.

— Քո դեմքից ու շարժուձևից երևում է՝ շատ բարի, առաքինի ու ազնվական մարդ ես: Քո ընկերը շատ բռի, գլուխգովան և վատ երիտասարդ է երևում: Զարմանում եմ՝ ո՞նց ես դրա հետ ընկերություն անում:

— Թագավոր,— պատասխանեց երիտասարդը,— ինչ վատ բան ասում ես, ինձ ասա, իմ ընկերը շատ խելոք, բարի ու առաքինի մարդ է, և ես նրա խոնարհ ծառան եմ:

Թագավորը ձայն չհանեց: Երբ ընկերը ներս մտավ ու քիչ հետո մյուսը դուրս եկավ, նույն բաները ասաց նոր ներս եկած ընկերոջը: Ստացավ նույն պատասխանը: Թագավորը ընկերներին ընծաներ տվեց և ուրախությամբ ճամփու դրեց:

Ծառան հարցրեց.

— Թագավոր, ապրած կենաս, ինչքան որ քեզ մոտ մեծամեծ մարդիկ եկան, բոլորի գլուխները կտրեցիր, շարեցիր բերդի պարսպին: Ի՞նչն էր պատճառը, որ այս երիտասարդների գլուխը չկտրեցիր, այլ նվերներ տալով՝ ուրախ-ուրախ ճամփու դրիր:

Թագավորը պատասխանեց ու ասաց.

— Իմ մոտ ինչքան որ հյուրեր եկան, բոլորը մեծ-մեծ խոսքեր ասացին ընկերության մասին: Բայց հենց որ իրենց ընկերը դուրս եկավ, նրա ետևից վատաբանեցին: Այս երիտասարդները իրար ետևից վատ խոսքեր չասացին, այլ իրենց անձը ցածրացրին ու ընկերոջը բարձրացրին: Ա-

հա այս պատճառով ես նրանց գլուխը չկտրեցի:

Այս առակը ուսուցանում է, որ ով իր ընկերոջը սիրի ու հավատարիմ մնա նրան, բարի անուն կվաստակի:

# Մահվան դատապարտված փիլիսոփան և իր հավատարիմ ընկերը

Թագավորի հրամանով մի փիլիսոփայի բանտարկեցին, որ գլխատեն:

Իմաստասերը երբ իմացավ, որ պիտի մեռնի, թագավորից խնդրեց.

— Թագավոր, թույլ տուր գնամ, հարազատներիս տեսնեմ՝ գամ, նոր գլուխս կտրեք:

Թագավորը պայման կապեց.

— Թույլ կտամ, եթե մի երաշխավոր գտնես, որը քո փոխարեն նստի բանտ: Եթե դու ժամանակին չգաս, քո տեղը նրա գլուխը պիտի կտրենք:

Եվ մի ուրիշ իմաստասեր՝ սրա բարեկամը, համաձայնեց թագավորի պայմանին: Բանտարկվածին ազատ արձակեցին, գնաց տուն: Բայց ժամանակին չկարողացավ ետ դառնալ: Թագավորը հրամայեց գլխատել երաշխավորին: Սրան տարան մահապատժի հրապարակը:

Երբ դահիճը սուրը քաշեց, որ գլխատի, հանկարծ տեղ հասավ արձակված իմաստասերը և աղաղակեց:

— Դրան մի սպանեք, ինձ սպանեք:

Եվ երկու բարեկամները սկսեցին քաղցր կռիվ անել: Մեկն ասում էր.

— Ես քեզ երաշխավոր բռնեցի, որ եթե չգամ, քեզ գլխատեն: Բայց քանի որ եկել հասել եմ, դու ազատ ես:

Մյուսը՝ թե.

— Ես երաշխավոր եղա քեզ, որ եթե չգայիր, ինձ գլխատեին: Քանի որ ուշացար, պետք է ես մեռնեմ:

Թագավորը շատ զարմացավ այդպիսի կատարյալ սիրո վրա և հրամայեց երկուսին էլ ազատ արձակել:

Զրույցները խմբագրությանն ներկայացրեց
**ՌԱՖԻԿ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԸ**



Նկարը՝ [illegible]

# Ծառեր ենք տնկում

Հովհաննես Եղբորս

Ծառեր ենք տնկում մեր դռան առջև
Ու հողի այն սև կուրծքն ենք պատռում,
Ծառեր ենք տնկում,
Հուշեր ենք թաղում
Արմատների հետ՝
Մենք՝ քույր ու եղբայր:

Հուշեր ենք թաղում հենց դռան առջև,
Որ հավատացնենք գնացող-եկողին՝
Այստեղ եղել են երկու ծաղիկներ,
Ապրել են այստեղ մի քույր ու եղբայր,
Հուշեր են թաղել,
Հուշեր թաքցրել
Մի քույր ու եղբայր:

. . . .

Աճել են ծառերը՝
Եղևնին, բարդին,
Կատարները պարզել
Հզոր արևին:
Բարդու կատարին բույն են դրել
Հուշերը՝ թաղված արմատների հետ...
Լսիր, իմ եղբայր,
Մեր հուշերը, տես,
Դեպի արևն են բարձրանում արդեն:

# Նավակն ու կարապը

Ծովի գրկում
Մի նավակ է,
Ես կարծում եմ,
Թե կարապ է:

Գնում-գալիս է
Նավակը,
Ես կարծում եմ,
Թե պարում է
Այդ կարապը:

Նավը գնաց, այնքան գնաց՝
Հեռվից կարծես
Թե կարապի վիզը մնաց:

# Աղավնի եմ բռնել

Աղավնի եմ բռնել
Երդիկից մեր տան,
Դողում էր ամբողջ մարմնով
Ձեռքերիս մեջ,
Մանկությանս օրերի պես
Թռչել էր ուզում անվերջ:
Հանցագո՞րծ ես ինձ կարծում,
Սիրուն աղավնի,
Ես հանցագործ չեմ լինի,
Մի մտահոգվիր...
Մի դողդողա էլ իզուր,
Բաց կթողնեմ՝ կթռչես,
Եվ երկնքով ճախրելիս
Ինձ քո կողքին կհիշես:

# Կայծեր

Փայլիր, արևիկ,
Կապույտ երկնքում,
Դուք, ձյուներ, հալվեք
Աբովի լանջում:—
Կարծես լսում են
Իմ ասածները,
Կայծեր են թողնում
Ձյան փաթիլները,
Կայծեր արծաթած...

# Ու՞ր են հիմա

Ո՞ւր են հիմա ծաղիկները,
Ո՞ւր են հիմա մեղուները,
Ո՞ւր են հիմա թիթեռները,
Ո՞ւր են գարունն ու արևը,
Թաքնվե՞լ են, թե՞ քնել են,
Կգա՞ն արդյոք նրանք կրկին...
Ես խնդրում եմ՝ ասեք դուք ինձ
Ո՞ւր են, ո՞ւր են, կգա՞ն կրկին...



●●●

Քո ծաղիկներից
Մայր մեղվի նման
Նեկտար եմ քաղել,
Ես կյանք եմ առել,
Քո ամեն ինչից,
Ինձ կյանք է տվել
Քո մեջ բնակվող ամեն, ամեն ոք...
Մեղու կդառնամ, թիթեռ կդառնամ,
Կնախրեմ գրկումդ,
Գյուղ իմ հարազատ։

## Օվկիան

Օ, դու Օվկիան,
Ինչքան հուշեր ունես
Թաղված քո խորքում,
Թաղված մշուշի անհետ ստվերում...
Ծովերի իշխան,
Օ, դու Օվկիան...
Պեղումներ կանեմ,
Դու լավ իմացիր,
Կգտնեմ բույնը
Ոսկե ձկնիկի,
Կձուլվեմ քեզ հետ,
Կլինեմ երջանիկ,
Կապրեմ քո գրկում,
Ինչպես ոսկե ձկնիկ...

## Պատուհանից

Վարագույրի նեղ
Անցքերի միջից
Մի եղնանի է
Ծկլատում ներս...
Վարագույրի նեղ
Անցքերի միջից
Միտն է ինձ ժպտում,
Ցատկում, ծլվլում...
Եվ պատուհանիս
Ապակու վրա
Մի վարդենի է
Թիկն տվել...

ՆԱԻՐԱ ՍԻՄՈՆՅԱՆ
Բոգդանովկայի շրջան, գ. Հեշտիա, 9-րդ դասարան

## Երազանք

Լուսե փաթիլներ ձյունի,
Դուք շտապում եք պսակադրության՝
Հարսանեկան շորեր հագած,
Ու լույսը ձեր փոստատարն է,
Իսկ դուք՝ սպիտակ ծրարներ։
Լուսե փաթիլներ ձյունի,
Դուք նորածին մանուկներն եք
Խաղաղ ամպերի,
Որ մի պահ ծիծաղում եք,
Որ մեռնում եք մի պահ,
Ջնծաղիկ եք դառնում,
Ու դառնում եք զանգակ,
Իսկ ո՞վ չի երազում
Այդպիսի վեհ մի մահ։

ՎԵՐԳԻՆԵ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ
Գեղակերտի միջն. դպրոց, 9-րդ դաս.

## Ձյուն

Գիշեր է...
Օդում անմեղությունը
Ձյան փաթիլների
Կորչում է մի պահ
Այս լապտերների
Լույսով թաթախված
Հայացքների տակ...
Լույսի մաքրությամբ
Անմեղությունն է
Մաղվում մայթերին,
Մաքրագործելով
Գիշերն այս մթին...

ՍԵՅՐԱՆ ԿԱՐՍՅԱՆ
Էջմիածին, № 10 դպրոց, 7-րդ դասարան





ԶՐՈՒՅՑ ՏԱՍՆՈՒԹԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# Ռուշա Երկրորդը և Արարատի հայոց թագավորության ընդարձակումը

*Արա II-ի որդին իր պապի անունն էր կրում՝ Ռուշա (կամ Հռոշա), այսինքն՝ Ռուշա II-ն էր։ Ասորեստանի արձանագրություններից մեկի մեջ նա կոչվում է նաև Հայա։ Քաղաքականության տեսակետից նա հետևեց հորը՝ Արա II-ին, այն է՝ լավ հարաբերություններ պահպանել Ասորեստանի հետ։ Ռուշան շատ երկար թագավորեց՝ 40 տարի (մ. թ. ա. 685—645 թթ.)։ Եվ այդ տարիների ընթացքում Հայքը Ասորեստանի հետ ոչ մի անգամ չպատերազմեց։ Արարատի թագավորության պատմության մեջ այսպիսի բան չէր եղել։*

*Ռուշա II-ի թագավորության տարիներին Ասորեստանում երեք թագավոր փոխվեց, և երեքի հետ էլ Ռուշան լավ հարաբերություններ էր պահպանում։ Նրանք հայոց թագավորին եղբայր էին անվանում, հայոց թագավորն էլ՝ նրանց։*

*Մ. թ. ա. 681 թ. Ասորեստանի մայրաքաղաք Նինվեում Սենեքերիմ թագավորին սպանեցին նրա որդիները՝ Ադրամելիքն ու Սարասարը։ Մենք արդեն գիտենք, որ Աստվածաշնչում Թագավորների IV գիրքը պատմում է, թե ինչպես դավադիր եղբայրները իրենց հորը թրով սպանեցին և փախան ու փրկվեցին Արարատի երկրում։ Ըստ մեր դյուցազներգության՝ «Սասունցի Դավթի» առաջին մասի, որ կոչվում է «Սանասար և Բաղդասար», հայրասպան եղբայրները փախել են Մեծ Հայքի հարավային շրջանը՝ Սասուն։ Լեռնային Սասունն Ասորեստանին շատ մոտ է, և փախստական եղբայրների համար թաքնվելու հարմար վայր էր։*

*Սակայն Սենեքերիմի դեմ, բացի նրա երկու որդիներից, ապստամբել էին նաև ուրիշ մեծամեծներ։ Երբ նրանք պարտվում են, նույնպես փախչում են Սասուն։ Նրանց հետ Սասուն են գալիս նաև Ասորեստանի ուրիշ շատ բնակիչներ, որոնք երևի ինչ-որ վախ ունեին նոր թագավորից։*

*Իսկ նոր թագավորը Սենեքերիմի մյուս որդին էր՝ Ասարհադոնը՝ հայրասպան Ադրամելիքի և Սարասարի հարազատ եղբայրը։ Նա կռվեց ու հաղթեց հոր բոլոր թշնամիներին և գահ բարձրացավ մ. թ. ա. 680 թ. (իշխեց մինչև մ. թ. ա. 669 թ.)։*

*Հայոց թագավոր Ռուշա II-ը բարեկամական ջերմ հարաբերությունների մեջ էր*



Թեշիբի արձանիկը՝ գտնված Կարմիր բլուրում



Թեշիբաինի բերդաքաղաքի մառաններից՝ բացված Կարմիր բլուրի պեղումների ժամանակ

Բրոնզյա կապարճ (Ռետամա)



Ասորեստանի նորընծա թագավորի՝ Ասարհադոն VIII-ի հետ։ Հայոց թագավորը Սենեքերիմին սպանողներին ու նրա թշնամիներին հակառակորդ էր։ Սեպագիր արձանագրությունները կարդալիս նկատում ենք, որ Արարատի թագավորությունում հայ իշխանների ու մյուս մեծամեծների մի մասը, հակառակ Ռուշա II-ի, դեմ է եղել Սենեքերիմին, պաշտպանել է Ասորեստանի այս թագավորի թշնամիներին. երբ Ասարհադոնը հաղթեց իր հոր հակառակորդներին, դա նաև Ռուշայի հաղթանակն էր Հայքում։ Եվ ահա Արարատի թագավորության տարբեր մասերից Ասարհադոնի ու Ռուշայի հակառակորդները նույնպես փախան Սասուն։

Ասորեստանի սեպագիր արձանագրություններում Սասունը կոչվում է Շուբրիա։ Այդ արձանագրությունները մեզ պատմում են, թե ինչպես Նինվեից Ասարհադոնը և Վան-Տոսպից Ռուշան նամակներ էին գրում Սասուն-Շուբրիայի տիրակալին՝ պահանջելով վերադարձնել թե՛ ասորեստանյան, թե՛ արարատյան փախստականներին։ Բայց Սասունի տիրակալն անընդհատ մերժում էր։

Սասունը Մեծ Հայքի հարավային Աղձնիք աշխարհում է։ Այն Արարատի թագավորության մի մասն էր։ Բայց ահա,

*երբ Ասորեստանից և Արարատի թագավորությունից այնտեղ հավաքվում են Ասարհադոնի և Ռուշայի հակառակորդները, Սասունն այլևս չի ենթարկվում հայոց թագավորին։ Իսկ Ռուշան և Ասարհադոնը վախենում էին Սասունում հավաքված իրենց թշնամիներից։ Նրանք կարող էին զորք հավաքել և հարձակվել Նինվեի ու Վան-Տոսպի վրա։ Վախը նաև այն պատճառն ուներ, որ Սասունում հավաքված հակառակորդները գաղտնի բանակցել էին մարերի և սկյութացիների հետ։ Նրանք, երևի, ուզում էին մարերի և սկյութացիների օգնությամբ տապալել Ասորեստանի ու Հայոց թագավորներին ու երկու տեղում էլ գրավել իշխանությունը։*

*Ռուշայի հետ պայմանավորվելով՝ Ասարհադոնը մեծ զորքով հարձակվում է Սասունի վրա, գրավում այդ շրջանը և իր երկրի փախստականներին ոմանց սպանում, ոմանց վերադարձնում Ասորեստան։ Հայ փախստականներին էլ նա հանձնում է իր բարեկամ Ռուշային։ Այդպես վերացվում է Սասունում կազմակերպված դավադրությունը։*

*Ռուշայի և Ասարհադոնի հարաբերությունները ավելի ջերմացան։*

*Ասորեստանի հետ իր կնքած բարեկամությունից օգտվելով, Ռուշա II-ը մի քանի արշավանք կատարեց դեպի արևմուտք։ Հիշենք, որ Արամն էլ արշավեց մինչև Փոքր Ասիայի խորքերը։ Ռուշան Եփրատից արևմուտք ջախջախեց փռյուգացիների (մուշկերի) բանակը, գրավեց Փոքր Հայքը։*

*Այդպես, Ռուշա II-ը դեպի արևմուտք ընդարձակեց Արարատի թագավորությունը. այն դուրս եկավ Մեծ Հայքի սահմաններից և իր մեջ ընդգրկեց նաև Փոքր Հայքըն ու սրան կից շրջանները։*

*Ռուշա II-ը նաև մեծ շինարար էր։ Վանա լճի ափին, Արծկե քաղաքի մոտ, նա կառուցեց Հայկ աստծո անունը կրող բերդաքաղաք, իսկ Հրազդան գետի ափին կառուցեց ռազմի աստված Թեշիբի (Թեյշեբայի) անունը կրող բերդաքաղաքը՝ Թեշիբաինին։ Այն ժամանակ Հրազդանը կոչվում էր Իլդարունի։ Ահա Ռուշայի կարգադրությամբ նոր քաղաքի դիմաց, գետի հակառակ ափին ջրանցք են անցկացնում, հետո մի քանի կիլոմետր ական են փորում դիմացի բլուրի մեջ, և ջրանցքը անցնում է գետնի տակով։ Իսկ շրջակայքում Ռուշայի կարգադրությամբ մշակում են խոպան հողերը, բազմաթիվ ծառեր են տընկում, խաղողի մեծ այգիներ գցում։*

*Այսօր էլ ցանկացողը կարող է գնալ Ջրբախ, ապա Կարմիր բլուր։ Դա հենց Թեշիբի հզոր քաղաքի մնացորդն է։ Եթե այդ բլուրից նայեք Հրազդանի մյուս ափին, կտեսնեք Ռուշայի անցկացրած ջըրանցքը, որ Հրազդանից դուրս գալով՝ քիչ անց մտնում է գետնի տակ։*

*Թեշիբաինին դարձավ կարևոր կենտրոն, որտեղ հսկա կարասների մեջ պահում էին հացահատիկ, գինի, այլ մթերքներ։ Այդտեղ կային նաև ձեթ ու գարեջուր պատրաստելու արհեստանոցներ։ Հնագետներն այդտեղ գտել են նաև կավե զանազան ամաններ, բրոնզյա գավաթներ, զենքեր, վահաններ, սաղավարտներ, սեպագիր արձանագրություններ, սևացած ցորեն, խաղողի կորիզներ և այլն։ Ափսոս միայն, որ հին դարերից եկած այդ բոլոր իրերը հանելուց հետո հնագետները հրաշալի բերդաքաղաքը անտերունչ թողեցին։ Իսկ Զվարթնոցի թանգարանում պահվում է Ռուշա II-ի մեծ ու գեղեցիկ արձանագրությունը այգիներ գցելու և բերդաքաղաքը կառուցելու մասին. «Այս հովտի հողն անմշակ էր, այստեղ ոչինչ չկար։ Ինչպես որ Հայկ աստվածն ինձ կարգադրեց, մրգատու այգիներ գցեցի և սկսեցի քաղաքի կառուցումը։ Իլդարունի գետից ջրանցք անցկացրի... Ռուշա թագավորի այս հովտում եթե մեկն ուզենա ջրանցքի ջրով մի բան ջրել, թող մի ուլ մորթի հանուն Հայկ աստծու, մի ոչխար զոհաբերի Թեշիբ աստծուն, մի ոչխար էլ Շիբինի աստծուն։ Ռուշան եմ, Արայի որդին, հըզոր թագավորը, մեծ թագավորը, աշխարհի թագավորը, Վանա երկրի թագավորը, թագավորների թագավորը, Տոսպ քաղաքի տիրակալը»։*

*Ռուշա հայոց թագավորը Արարատի հըզոր տիրակալներից վերջինն էր։*

*Ինչպես տեսանք, նրա ժամանակ Հայքում մեծամեծների և իշխանների մեջ երկու խմբավորում կար. մեկը հավատարիմ էր թագավորին և կողմնակից էր Ասորեստանի հետ բարեկամության պահպանմանը։ Մյուս խմբավորումը գաղտնի դաշնակցել էր Մարաստանի հետ և ուզում էր մարերի և սկյութացիների օգնությամբ իշխանությունը գրավել։ Ռուշա II-ը հաղթեց մարականներին, բայց նրա մահից հետո մարերի կողմնակիցները ուժեղացան, և դա թուլացրեց Արարատի թագավորությունը։*

---

(շարունակելի)



# Ալեքսանդր Ծատուրյան

## 1865—1917

## Նավավար

— Էյ, նավավար, ի՞նչ ես անում,
Ո՞ւր ես նստում դու նավակ.
Սև ամպերն են, տես, բարձրանում
Դեպի երկինք կապուտակ:

Հորիզոնն էլ մութով պատած,
Հեռվում ամպն է որոտում.
Նայիր, ծովն էլ կամաց-կամաց
Պարզ երեսն է կնճռոտում...

«Էհ, աղա ջան, դարդ մի արա,
Ծովափին եմ ես ծնվել.
Մեծացել եմ ծովի վրա,
Ծովի ջրով միշտ սնվել:

Մանուկ օրից շատ եմ տեսել
Եվ փոթորիկ, և աղետ.
Ծովն է ինձ միշտ օրոր ասել,
Նոր չեմ ծանոթ ծովի հետ:

Հայր ունեի— ծովում կորավ,
Որսի էլած մութ գիշեր,
Նորան ալիք լափեց, կերավ,
Նա ձկնորս էր անվեհեր:

Ծովում կորցրի երկու եղբայր,
Նավավարներ ինձ նըման.
Որ իմացա՝ երկինք, աշխարհ
Ասես գլխիս փուլ եկան...

Էհ, աղա ջան, դարդ մի անիլ,
Թե ծովն ինձ էլ կուլ կըտա.
«Կուժն ամեն օր ջուր չի բերիլ...»
Ամեն բանի վերջը կա...

Կյանքը լավ է... բայց ի՞նչ արած...
Համ էլ մահից ինչ փախչեմ...
Ծովն է տալիս մեզ կյանք ու հաց,
Ծովի տակ էլ կը հանգչեմ...»:

Ասաց, շարժեց նա թիակներ
Եվ, բարձրաձայն երգելով,
Քաջ սլացավ ծովի խորքեր,
Սև ալիքներ ճեղքելով...

# Մեր դպրոց
# բեմ

Նկարը՝
ՀՈՎՆԱՆ
ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Հինգերորդ դասարանում էի: Մեր ջոկատավարուհի ընկեր Գայանեի նախաձեռնությամբ Նոր տարվա տոնահանդեսի առթիվ պատրաստվեցինք բեմադրել Հովհաննես Թումանյանի «Ոսկի քաղաքը»:

Սկզբում ինձ հանձնարարվեց Ուքանա թագավորի դերը: Հետո Դիվանա չգտնվեց, և ես դարձա Դիվանա:

Ամեն օր պիոներսենյակում փորձեր էինք անում: Քանաքարայի դերում չորրորդ (այժմ արդեն յոթերորդ) դասարանցի Գայանեն էր, Թագուհի Գոհարի դերում՝ մեր դասարանի Արուսյակը: Հիշում եմ՝ խաղում էին նաև մեր Աննան, նրա եղբայրը, Նոնան, Հռիփսիմեն, Լիանան և մեր տղաներից մի քանիսը:

Թատրոնից տատիկս ինձ մի կարմիր տրիկո բերեց, մի կարմիր փետուր, խաչակիր զինվորի թիկնոց և մի տուփ գրիմ:

Դեկտեմբերի վերջերն էր: Տուն եկա և նորից շտապ վազեցի դպրոց: Հագա շորերը, գրիմ քսեցի: Աղջիկների շորերը շատ սիրուն էին, երկար և փայլուն: Միայն Լիանան չէր շքեղ շորերով: Նա բարի պառավի դեր էր խաղում, որն ինձ փետուր էր տալիս: Ընկեր Գայանեն վերափոխել էր հեքիաթը:

Իսկույն մի գեղեցիկ աղջիկ նկարեցի. դա իբր Քանաքարան էր, որի նկարը փակցված է Գոհար թագուհու դղյակում:

Միայն մի բան չէր ստացվում: Քանաքարայի դերակատարուհին ոչ մի կերպ չէր կարողանում ասել. «Այժմ ես քոնն եմ»:

— Լավ, ա՛յ աղջի, հո նիշտ նրանը չդառա՞ր:

Մինչ այդ ով փորձել էր Քանաքարայի դերը, համարձակորեն ասել էր այդ բառերը: Իսկ Գայանեն կարմրում էր ու լռում:

— Լավ, ներկայացման ժամանակ կասեմ:

Մինչև ներկայացման սկսվելը մենք դահլիճն էինք ուսումնասիրում: Ամեն ինչ փայլում էր՝ փոքրիկ տոնածառը, անբեղ-անմորուք Ձմեռ պապիկը, պստլիկ Ձյունանուշիկը (վեցերորդ դասարանի Կարինեն): Երգում-պարում էին բարձր դասարանցիները, ուսուցիչները, ընկեր Գայանեն: Իսկ մենք կազմ ու պատրաստ սպասում էինք:

Վերջապես բեմ ելանք:

Վարագույրը փակ էր դեռ: Եվս մի քանի րոպե, և այն բացվեց...

Ես խաղում էի և աչքի պոչով դահլիճն ուսումնասիրում: Սեղանների վրա լիքը ուտելիք կար, բայց ոչ ոք չէր ուտում, բոլորը հիացած նայում էին մեզ: Այո, հիացած. տասներորդի Նունեն բուք մատը տնկեց:

Ես գրկեցի Լիանա-Պառավին. նա ինձ տվեց մի փետուր, որն ինձ տարավ Ոսկի քաղաքը: Ի՞նչ շուտ հասա Ոսկի քաղաք, մի րոպեից արդեն Գոհար թագուհու մոտ էի:

Պետք է ասեմ, որ Արուսյակը փառահեղ էր արքայական զգեստների մեջ: Մենք միասին շրջեցինք պալատի սենյակներում, մինչև հասանք Քանաքարայի նկարին...

Ես հեռացա և շուտով հասա մի կղզի, Վարագույրի ետևում Արուսյակը վրան մի մուգ խալաթ գցեց և երեսը փակ հայտնվեց իմ դեմ:

— Ամուսնացիր ինձ հետ, ազնիվ Դիվանա,— ասում է կերպարանափոխված Գոհարը:

Ես հիշեցի, որ Արուսյակը Գայանեին ասում էր. «Իմ ջանը



քար ա՞, որ ասում եմ՝ ամուս
կարող ասել՝ այժմ ես քոնն եմ»:
Ներկայացման ժամանակ Գ
բայց այնքան ցածր, որ միայ
Եվ այսպես վերջացավ իմ
Երկարատև ծափերից հետո
որպես մրցանակ, տվեցին մի
Գեորգինյան տվեցի իմ խաղընկե
րանք, իսկ շորերս էլի թատրոն
միայն կարմիր փետուրս:
Պահում էի նաև գրիմատուփ
այնպես պարզ հիշում. էի այդ օր



...ցիր ինձ հետ, իսկ դու չես
...:

...յանեն ասաց այդ խոսքերը,
... ու ինքը լսեցինք:
...աջին ներկայացումը:
...եզ ներքև կանչեցին: Ինձ՝
...իտակ գեորգինա և մրգեր:
...ւմի Գայանեին, մրգերը կե-
...րադարձան: Ինձ մոտ մնաց

...: Հոտ քաշելով նրանից, ես
...: Բայց գրիմը հնացավ, բա-

փեցինք: Գոնե լուսանկարեին մեզ. դա ամենալավ հիշատակը կլիներ այդ անմոռանալի օրվանից: Ոչ, այդ օրից մնաց միայն կարմիր փետուրը, որն այժմ պահում եմ գրադարակիս մեջ:

Յոթերորդ դասարանում ես հաճախում էի թատերական խմբակ:

Ուսուցիչս՝ Հենրիկ Բաղալյանը, մոտ վաթսուն տարեկան մի շատ բարի մարդ էր:

Երկար ժամանակ նա փորձում էր Զեյտունի «Հասան ու բարակը» նովելը, բայց չէր ստացվում: Հետո բեմադրեց Դեմիրճյանի «Քաջ Նազարը»: Ես խաղում էի ցնդած տիրացուի դերը:

Նազարը տասներորդցի Հակոբն էր, Ուստիանը՝ նրա համադասարանցի Լուսինեն: Պառավ հարևանուհին ինքերորդցի Գայանեն էր:

Ես փարաջա հագա: Ընկեր Բաղալյանը խառնեց մազերս, դեմքիս շատ-շատ գրիմ քսեց, բեղեր կպցրեց... Եվ ես ոչ թե տիրացու դարձա, այլ գիշերային վհուկ:

Օ, ինչ սարսափելի էի: Այդ օրը շատ-շատերի վախեցրի:

Հիշում եմ, տասներորդցիների ավարտական ցերեկույթն էր... Երգեցին, նվագեցին բեմում: Որքան էր փոխվել բեմն այն օրից, երբ ես Դիվանա էի խաղում: Վարագույրները չկային, բեմի լույսերը՝ նույնպես: Ճաղատ էր խեղճ բեմը:

Ընկեր Բաղալյանին տեսնելով՝ հանդիսականները ծափահարեցին:

Բեմ ելան Հակոբ-Քաջ Նազարը և Լուսինե-Ուստիանը: Հետո հերթը հասավ ինձ:

— Թալեմ-բռնեմ, բռնեմ-թալեմ...

Բոլորը ծիծաղեցին: Ես զանազանեցի իմ հայրիկի ծիծաղը:

— Բարեողջույն, եղբայր Նազար...

«Եղբայր Նազարը» շատ դինջ էր խաղում, իսկ ես ցնդած էի, չէ՞, թռվռում էի, երգում...

— Ծառա իմաստուն տիրեսցե տերանց անմտաց...

Դրոշակը գրիմ մաքրելու շորն էր: Ես հանդիսավորությամբ հանձնեցի այդ «աստվածասայր» դրոշը Նազարին, որ նա ջարդի «քյուր և հազար թշնամյաց»:

— Անհավասիկ փոշին՝ հսկաների, առ,— հանձնում եմ փոշոտ շալը Նազարին, պատվիրում, որ «դնե այդ համափլն ի ծոցին և հաղթի թշնամյաց» և էլի՝

— Թալեմ-բռնեմ, բռնեմ-թալեմ...

Ու դուրս եկա: Շատ ծափահարեցին: Ես ուրախ էի: Շտապ մաքրեցի դեմքս, հանեցի փարաջան և դահլիճ մտա:

— Շատ լավ էր, ապրես,— ասում էին չորս կողմից:

— Էն ինչե՞ր էիր անում, ոնց որ հիշտ դերասան լինեիր,— ասաց մեր դասարանցի Դոհարը:

Անցել է երկար ժամանակ, բայց շատերը դեռ չեն մոռացել իմ ցնդած տիրացուին: Իսկ վերջերս մեր դպրոցի պահակ Գյուլի մորաքույրն ինձ ասաց.

— Հիշո՞ւմ ես էն տերտերին:

Իսկ փոքրիկ հանդիսատեսները միշտ մատով ցույց են տալիս ու ասում.

— Տեսեք, տեսեք, էն կախարդը...

Այդ դերն ավելի սիրեցի:

*ԱՐՄՎԻ ԲԱԽՋԻՆՅԱՆ № 126 դպրոցի 9-րդ դաս.*

ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# Քո աղավնին



Պատանեկիկ,
Պատանեկիկ,
Դու երբեմն նայիր վերև՝
Նայիր երկինք,
Ախր մի օր քո ափի մեջ
Մի աղավնի պիտի իջնի,
Որ քո ձեռքով իրեն տանես
Ու բաց թողնես ազատ երկինք:
Բայց դու գիտե՞ս,
Արդյոք գիտե՞ս,
Թե ուր, նա ուր պիտի թռչի,
Ում տանիքին պիտի իջնի,
Ում աչքերի երկինքներում
Պիտի ճախրի
Եվ իր համար նա արդյոք ում,
Ում պիտի նա ընկեր ընտրի:
Պատանեկիկ,
Պատանեկիկ,
Թե ուշանա քո աղավնին,
Թե ետ չգա,
Քեզ չհիշի,
Թե արցունքն էլ սրտիդ միջից
Տխուր-պայծառ փայլի՜, փայլի՜
Ու աչքերիդ երկինքները
Հանկարծ պատի,
Դեռ չարտասվես,
Լաց չլինես,
Միա՜յն, միա՜յն
Քաջ ասպետի,
Քաջ ասպետի նման տխրիր,
Ու մտածիր,
Որ մի աղջիկ քո այս սիրով,
Այս սիրով հենց
Պիտի երկի՜նք, երկի՜նք նայի.
Գտնի, սիրի քո աղավնուն,
Նրան կանչի իր աչքերով,
Իր ափերի
Գգվանքներով,
Համբույրներով տաքացնի,
Հետո մի օր, հետո մի օր
Գուցե ճամփին քո երազի
Դու քո սիրով ասպետական
Գտնես քնքուշ այդ աղջկան
Ասես՝ բարև,
Ու նա ժպտա,
Ասես՝ ո՞վ ես,
Ու նա ժպտա,
Ձեռքդ պարզես՝
Մեկնի ձեռքն իր,
Ու ձեռք-ձեռքի տված ժպտաք,
Եվ այդ պահին,
Հենց այդ պահին
Հանկարծ տեսնես,
Որ սիրունիկ այն աղավնին
Նստել է ձեր իրար սեղմած
Թաթիկներին՝
Հավերժական կյանքի ճյուղն ու
Բույն հյուսելու ղունղունոցը
Իր կտուցին:
Պատանեկիկ,
Պատանեկիկ,
Դու երբեմն նայիր վերև՝
Երկի՜նք, երկի՜նք...

Նկարը՝
ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ

# Առավոտից հետո, ըության պատ

Նկարը՝ ՀԱՄԼԵՏ ՈՒԴՈՒՄՅԱՆԻ

Պապը ցերեկը հանդերն էր գնացել, իբր՝ կարտոլին նայի, որ ամբողջ օրը խելառ վազվզող անհերումեր շան լակոտները չըքանդեն, դժվար պառկել էր թմբի տակ, չոր խոտի ցողունը դրել ատամների արանքը, ու Արութիկը, Քարանձավները գընալիս, հանդի մաքուր հեռվից տեսավ պապի ծխախոտի անհարազատ ծուխը։ Արգարի ժայռ ծեր քարի մոտ շուզեց լողանալու գնալ, նստեց հովին ու խոտերի ծերպ արանքից նայում էր պապին։ Երեխեքը գնացել, ձորն էին իջել, և հանդերում, պապի ծխից ու իր շնչից բացի, ուրիշ հոտ չկար։ Արգարի ժայռ ծեր քարը միտք էր ունեցել, և Արութիկին թվաց, թե նա էլ է խռոված, լուռ հեռացած։ Հետո, երբ պապի ծուխը դեռ չէր վերջացել, Արութիկը Սուրբ Հովհաննես լեռան ձորի ձյանն էր կարոտել, որ ոչ մի տարի չի կարողանում ծաղիկ, մեղու, խոտ, հանդ դառնալ՝ մենակ ձյուն է լինում, ու ոչ ոք իր մենակության թելերը նրան չի կապում։

Պապը, որ էդքան նայել է Սուրբ Հովհաննես լեռան ձորի ձյանը, հորքուրի մեռնելու ժամանակ ասում էր, թե՝ որ էդ ձյունից լիներ, հորքուրը խըշտ-խըշտ ուտեր ու բժիշկ բան էլ մոտ չգային, չէր մեռնի։ Վախեցել էին, որ իրեն էլ ասեին,— երեխեն ոնց մենակ ձորը գնա, լեղաճաք կլինի, մի դարդը քիչ է՝ երկուսը... Ոնց որ իրենք երեխա չեն եղել ու մենակ ձորը չեն գնացել։

Պապը տուն էր գնացել, ու Արութիկը արագ շնչեց։

Հանդերում ոչ ոք չկար։ Թռչունը, մեղուն, ծաղիկը, հովը, քարը ու պապի թողած անհարազատ ծխի հոտը Արութիկը հյուսեց ու չկարողացավ դրանց միացնել Սուրբ Հովհաննես լեռան ձորի ոչ մի ամառ չբարձրացող ձյան ծանր սառնությունը։ Էնտեղից գնաց իրենց դռանը կանգնեց. փոքր քույրը ցախավելի մի ճյուղի վրա շորեր էր ամրացնում, որ տիկնիկ դառնա, ու քթից ծլուլը կախվել էր վերևի հողոտ շրթունքին։

— Ապան գա՝ ասելու եմ, որ բոստանը չես փորել,— ասաց քույրը։

Նրա վտիտ ոտքերի անկրունկ չուստերը պատռված էին, և վրաները չորացած գոմաղբ կար։

— Կփորեմ,— բարձր ասաց Արութիկը։— Գնա մի քիչ ջուր բեր։

— Չեմ գնա,— ասաց քույրը։— Դու գընում հանդերում ման ես գալիս, ինձ էլ էստեղ ես թողնում։

— Կծեծեմ,— ասաց Արութիկը։— Գնա ջուր բեր։

— Բա ինչի՞ ես ապային ասում, թե՝ ես եմ դռանը նստում,— ասաց քույրը։

— Սիրանո՜ւշ,— ներսից կանչեց պապը։— Արի, Սիրանուշ։

Քույրը խելառ վազեց փայտե թույլ սանդուղքով։

Արևը չէր ծռվում, և թվում էր, թե օրը անշարժ կանգնած լայնանում է։

— Պապը պառկել է,— վախեցած ասաց քույրը։

Աչքերը բներում կորցնելով, Արութիկը կնճիռներ հավաքեց քթարմատին, սանդուղքից ցած էր նստած, վերև՝ քրոջը նայեց, տեսավ նրա վտիտ ոտքերի դողը ու չիթ շրջազգեստի քանդված փեշերը։

— Ինչի՞,— ասաց նա։

Քույրը անթարթ նայում էր։

— Էդ ի՞նչ է եղել,— ասաց Արութիկը։

— Պառկել է,— ասաց քույրը։

— Դե արի վերև,— հետո գոռաց նա ու՝ ոնց որ լաց լիներ։

Որ պապը պառկել էր և հիմա մենակ էր ու նայում էր դռան ետևում դրած խաղաղ ձեռնափայտին, որ փորձում էր ինչ-որ կարևոր հուշ գտնել, որ բոլոր գտած հուշերը հուշ չէին թվում, ոնց որ էսօր էին, որ գիտեր շոգի խորքում բզզացող մեղուների մասին,— Արութիկը այդ բոլորը շարեց իրար կողք ու մտքում մատը դրեց պապի այն հուշի վրա, որը մնացել էր հորքուրի մեռնելուց հետո, հորքուրի՝ Սուրբ Հովհաննես սարի ձյունը խըշտ-խըշտ ուտելու ցանկությունից հետո,— էդ էր պապի հուշը։

— Գնա ասա՝ պզո՞ւմ է Սուրբ Հով-

հաննես սարի ձյունը բերեմ,— ասաց նա։

Քույրը կանգնել, չհասած խնձորի անպարզ հեռվով նայում էր Արութիկի կըկոցված հայացքին։

— Գնա դե,— գոռաց Արութիկը։ Նա ձեռքը դրել էր պատի քարերից մեկի վրա, և քույրը տեսնում էր, որ նա քարը սեղմել է ու մատի անցյալ տարի գերանդիով կտրված տեղը կարմրել է։

Տան երկրորդ հարկի դռան ձայնը միշտ նկարի պես էր երևում։ Երբ մայրը ուզում էր իրեն ծեծել, ինքը սոված նստում էր գոմերի մոտ, ֆետնին, չլմփան գործի նըման պիշ-պլշած աչքերով նայում գյուղին՝ ամայի ու անհարազատ թվացող տարածությանը, միայնակ պարապությունից քարը քարին խփում ու մեկ-մեկ ճանկըռվող ներսով նայում այդ պահին իրենց բացվող դռանը և բացվելու ձայնին։

Արութիկը մտածեց, որ էլի պիտի մերը ոչխարի կթից գա, տեսնի երեկվանից նույն տեղում ցցված բահը ու ինքը պիտի էլի գոմերի մոտ ապրող խաչոյի տղա Գրիգորին ասի, թե՝ մի քիչ հաց բեր, մերս ինձ էսօր ծեծելու է։

Ու որ գոմերի հեռվից ինքը տեսնում էր, թե մերն ինչպես է փորում, մանր քարերը բահի ծերով պատին նետում, ոնց որ իրեն չի նկատել, ու ինքը նրան էլ պետք չի, և իրիկնապահի արյուն արևից մոր դեմքը կարմիր ու քրտնած էր երևում, էդ մոր համար հեշ բան էր։ Ի՞նչ էր որ։ Երեխա է, բոստանը չի փորել, պիտի մերը ծեծի, հետն էլ խոսի, թե՝ պետք է փորել բոստանը, հերը էստեղ չի, մյուս ախպերները փոքր են, ձմեռը որ կարտոլը շերտշերտ շարի վառարանին, ուտի՝ էդ որտեղի՞ց պիտի ուտի որ, երբ հերը Թիֆլիս, Մառնեուլ կարտոլը ծախելու տանի, էդ որտեղի՞ց պիտի ասի՝ ոտնաման չունեմ, այ հեր, էնպես, սիրուն, որ Գրիգորը ունի, շոր էլ,— որտեղի՞ց, հը՞։ Ու էն էլ, որ մերը ուզում է իրեն ասի, թե՝ արի, գոնե էսքանը փորի, գնամ ես մի բան անեմ՝ ուտենք, ու չի ասում, գիտի, որ, որովհետև, ինքն է ուզում գնա, բահը մոր ձեռքից խլի, տո՛ւր, ասի, մեղք ես, այ մեր, սաղ օրը չարչարվում ես, տո՛ւր,— բահը խլի ու բոստանը հինգ րոպեում հերկի, մերն էլ ճաշ անի, հետո ախպերն էլ գա, իրար հետ փորեն ու արևը մայր մտնի, հողի կոշտ-կոշտ կտորները ստվերի սև բռնեն, նախիրը գա, ու մթնի։ Մերը, հետո, երբ աղբյուրը գնա ջրի, էնտեղ կնանոցն ասի, թե՝ երեխեքը սոված են, աղջի, բոստանը փորել են, բան չկար, որ ճաշ անեի, մակարոն ունեի մի քիչ, էն էր։ Հետո, որ գա արդեն, կնանիքը էնտեղ մի քիչ՝ էնպես, չկարողանան խոսել, ու, որ հետո խոսեն, ասեն՝ Անոյի երեխեքը ո՜նց մեծացան, աղջի, էդ ո՞նց հասցրին, էգուց-մյուս օրը Անոն հարսի-թոռի տեր կլինի... էդ ե՞րբ մեծացան, աղջի։

— Չի ուզում,— ասաց քույրը, ու հայացքը քանդված պատի էր նման, քարերի արանքից վեր ելած եղինջներով, և Արութիկի կառուցած էն դժվար ու պարզ աշխարհը՝ վերևից գլորվող քար ոնց որ, ընկնում էր քրոջ քանդված պատ հայացքից։

Խանութի առաջ կանգնած հացի մեքենայից երեխաները հացը, մինչև կոկորդները դարսած ձեռքերին, տանում էին ներս։ Մի աղջիկ վազում էր տուն՝ հայացքը առաջ տնկած։

— Հա՛ց է եկել, տա՛տ,— գոռում էր նա՝ իրենից առաջ նետելով վազելու սոված իմաստը, որ տատը փողն արդեն գտնի որևէ դժվար գրպանից, բռում սեղմած՝ փոքր հայացքով նայի։

— Չի ուզում,— էլի ասաց քույրը։

Ներսից պապի ծխախոտի ծուխը եկավ։

— Բան չի ուզում,— ասաց քույրը։

Սանդուղքի գլխից քույրը կախել էր ոտքը, և ոտքը նմանվում էր գոմի պատին դեմ արած բահի կոթին։

— Արի ցած,— ասաց Արութիկը։— Ինչի՞ ջուր չբերիր։

Քույրը աչքերը գցեց ցած կախած ոտքին։

—Ինչի՞ ջուր չբերիր,—ասաց Արութիկը։

Արևը մի քիչ ծռվել էր։ Արութիկը ստվերը գցել էր քրոջ վրա, հայացքը՝ նրա հողոտ ծնկներին, և լռությունը բահի կոթի նման հղկվել էր ու չորացել։

— Էդ ո՞նց է, որ Գրիգորը, երբ Արևիկին ասում է՝ նա քեզ պես չի անում,— ասաց Արութիկը՝ գոռոցը սեղմած։

Նա ապտակը շպրտեց քրոջը ու, որ իր ձեռքի ցավը չզգա, էլի շպրտեց։

Քույրը լալիս էր։

— Ի՞նչ է,— գոռաց վերջապես նա։

— Հը՞,— Արութիկը գոռոցը էլ չսեղմեց։

Պապը թըփ-թըփ կանգնեց դռան կիսաբաց հատվածում։

— Ի՞նչ է,— բարձր ասաց նա ու չնայեց Արութիկին։

Քույրը քանդվելով լալիս էր։

— Որ դու ձյունը չուզեցիր՝ ծեծեց,— կոկորդի ընդհատ-ընդհատ սեղմվածքների



արանքից ասաց նա։

Պապը, դողալով, ձեռնափայտը մանր ցնցեց։

Պապը, աչքերը փոքրացրած, հին-մին ծիծաղում էր։

Արևը միայն պապի քթին էր հասնում, աչքերը մութ էին, ու մեղուների բզզոցը էլ չէր լսվում։

— էդ երեխուց ի՞նչ ես ուզում,— շըր-թունքների ու ծխախոտի արա քից ասաց նա։

Որ մերը իրիկունը սարից գ-ալու էր, որ բոստանը էլի ինչքան որ չէր փորած՝ մը-նացել էր, որ մոր աչքերը ցուրտ ու հետո թաց էին լինելու,— պապի ձեռնափայտի նման չոր ու չկոտրվող պատկերը զնգալով պոկվեց, և ինչպես կուլ չգնացած հացի ժամանակ, Արութիկը թուքը կուլ տվեց։

— Որ ուզեիր էլ՝ չէի գնա,— ասաց նա ու չնայեց պապին։

Քրոջ լացը, մրի նման, կպչում էր ու շրջակայքում անշարժ լռություն պահում։

— Որ ուզեիր էլ՝ չէի գնա,— էլի ասաց Արութիկը։

Պապը չէր ծիծաղում, աչքերում, բայց, ամանին կպած մածունի նման, ծիծաղը կար։

— էդ ինչի՞,— ասաց նա։

— Խաբում է,— ասաց քույրը։

Քրոջ լացը ալիք-ալիք գնում էր։

— Քո ի՞նչ գործն է,— գոռաց Արութի-կը ու ոտքով խփեց։

—էդ ինչի՞ չէիր գնա,— ասաց պապը։— Բա որ հորքուրիդ պես մեռնեի՞։

Պապի ծիծաղը Արութիկը չկարողացավ լսել՝ թրթնջուկի նման թթվաշ էր, ու ծը-նոտի վրա խուտուտի պես ցավ պտտվեց։

— Ինչ անեմ,— ասաց նա։

Ոնց որ գորտը ափից՝ ջուրը, Արութիկը թռավ սանդուղքից, ետ՝ պապին ու քրոջը չնայեց։ Պապը ձեռքը քսում էր քրոջ գըլ-խին, նրա հետ նույնը նայում իրեն՝ խենթ երեխա, կարկատած շալվար, մենակ էդ գիտեր։ Մայրը, որ հիմի սարում՝ ազատ, արև, ճը՜ըն զնգոց, ոչխար է կթում, ու նը-րա աչքերում ինքը փորում է բոստանը, սոված նայում անշարժ արևին, պապի ծը-խից՝ դռանը մոտենում, էդ էլ գիտեր։

— Բա բոստանը՝ ո՞վ է փորելու,—պա-պը ծիծաղը դժվար թաքցրած կանչեց ե-տևից։

Որ քրտնած, արյունը զգալով փորելու ժամանակ բահի կոթը ջարդվում է՝ Արու-թիկը ջարդվեց։

— Ի՞նչ է,— գոռաց նա։



# ՇԱԽՄԱՏԻ ՓՈՔՐԻԿ ԻՇԽԱՆԸ

Երբ հեռավոր Արգենտինայի Ռիգո Գալիեգոս քաղաքի տոնականորեն զարդարված մարզասրահում տարածվեցին Սովետական Միության հիմնի հնչյունները՝ բոլորը ոտքի կանգնեցին: Նրանց հետ և այն նրբակազմ պատանին, որի պատվին հրնչեց իր երկրի հիմնը: Նա մի փոքր շփոթված էր, ամոթխած հայացքը հառել էր դահլիճում հավաքված այն բազմահազար մարզասերներին, որոնք եկել էին մասնակցելու մինչև տասնվեց տարեկան շախմատիստների աշխարհի առաջնության հանդիսավոր փակման արարողությանը: Այնուհետև առաջնության գլխավոր մրրցավարը բյուրեղապակյա գավաթը ձեռքին մոտեցավ պատանուն, շնորհավորեց և ամենաթանկագին այդ գավաթը նվիրեց նրան: Բեմահարթակում հավաքված 28 երկրներ ներկայացնող 32 շախմատիստներ սկսեցին հերթով մոտենալ և շնորհավորել իրենց տաղանդավոր հասակակցին: Նրանց մեջ էին կանադացի Ջոնսոնն ու բուլղարացի Պետկովը, արգենտինացի Զարնիցկին և հնդկացի Ռավին, բրազիլացի Մացուրան և ամերիկացի Գուրևիչը, իսպանացի Ֆաբրեգոն և մյուսները: Պատանին անհանգիստ էր և անհամբեր սպասում էր, թե երբ են վերջանալու այդ ձեռքսեղմումները: Ախր ինքը ի՞նչ է արել որ: Պարզապես նստել է խաղատախտակի մոտ, տարբեր ուղղություններով շարժել է շախմատի փայտե խաղաքարերը և այդ խաղնակատամարտը ավարտել իր օգտին: Իհարկե, ճակատամարտերը հեշտ ու հանգիստ էին թվում միայն այդ օրը:

Տասնմեկ հանդիպումներից նա տարավ 6 հաղթանակ և 5 խաղ ավարտեց խաղաղ ելքով, իր օգտին գրանցելով ընդհանուր հաշվով 8,5 միավոր, որով և փաստորեն դարձավ առաջնության միանձնյա հաղթող:

Իսկ ամենադժվարինը ամերիկացի Գուրևիչի հետ մենամարտն էր: Ի վերջո՝ պատանուն հաջողվեց պարտիան ավարտել խաղաղ դաշինքով: Այդ մենամարտի հենց նախորդ օրն էր, որ պատանու ուղեկիցն ու մարտավկան՝ միջազգային գրոսմայստեր Վ. Կուպրեյչիկը, նրան հիշեցրել էր իր ուսուցչի՝ Միխայիլ Բոտվիննիկի իմաստուն խորհուրդը. «Կարևորը չեմպիոնի կոչումը նվաճելն է: Հարկավոր է խաղալ ըստ դիրքի, չգերագնահատել սեփական հնարավորությունները: Հիշի՛ր. պարտությունները, բացի միավորի կորստից, նաև հսկայական նյարդային եռանդ են խլում: Հիմնական իրադարձությունները կզարգանան վերջնագծում: Այնպես որ՝ մեկնարկում անհրաժեշտ է խնայել ուժերը: Չէ՞ որ նույնիսկ Գարի Գասպարովը նույնանման մրցաշարում չեմպիոն չդարձավ, թեպետև նկատելիորեն ուժեղ էր իր մրցակիցներից»:

Ճիշտ է, մինչև ութերորդ տուրը նա առաջատարների շարքում էր, բայց դա դեռևս հաղթանակ չէր: Նրան մնում էր մյուս երեք հանդիպումներում ևս ձեռք բերել միավորների առավելագույն քանակ: Եվ դա նրան հաջողվեց... նախ պարտության մատնեց Հնդկաստանի և Իսպանիայի պատանիների չեմպիոններ Ռավիին և Ֆաբրեգոյին, այնուհետև խաղաղ դաշն կնքեց Բրազիլիայի ներկայացուցիչ Մացուրայի հետ:

Այս ամենն այսօր ետևում են մնացել, դարձել անմոռաց հիշողություն ու պատմություն: Իսկ երբ ամեն անգամ այդ մասին հիշեցնում են զարմանալի ընդունակություններով օժտված պատանուն, նա, ինչպես միշտ, ամոթխած լռում է: Ի՞նչ է արել, որ, պարզապես խաղացել է, հաղթել: Միայն այդքանը, ուրիշ ոչինչ: Իսկ 64 խորհրդավոր վանդակների հետ նրան ծանոթացրեց իր Նինա տատիկի եղբայրը՝ ՍՍՀՄ վաստակավոր մարզիչ Սուրեն Աբրահամյանը: Այսօր էլ իր գրապահարանում սրբությամբ է պահում նրա նվիրած՝ «Ճանապարհորդություն դեպի շախմատային թագավորություն» գիրքը, պարտավորեցնող ընծայագրով՝ «Ապագա չեմպիոնին»: Այնուհետև այդ ծանոթությունը փոխվեց մեծ ու անփոխարինելի բարեկամության: Եվ հենց Աբրահամյան-մարզիչն էր «մեղավորը», որ նա 8 տարեկանում լրացրեց առաջին կարգայինի, 11 տարեկանում՝ վարպետության թեկնածուի նորման, իսկ անցյալ տարվա վերջին նվաճեց սպորտի վարպետի պատվավոր կոչումը: Իհարկե, մինչ սպորտի վարպետի կոչումը նվաճելը՝ բազմաթիվ փորձություններ էին սպասում պատանուն... Լիտվայում մասնակցեց «Հուսո մրցաշարին», որտեղ հանդես էին գալիս երկրի մինչև 12 տարեկան շախմատիստները: Շահելով բոլոր 8 հանդիպումները, հաղթող ճանաչվեց էստոնիայի պատանիների բաց առաջնությունում: Հաջող հանդես եկավ նաև անցյալ տարվա վերջին Անդրկովկասի առաջնությունում: Այսօր շախմատը նրա համար ամեն ինչ է: Այդ զարմանահրաշ խաղին օրական նա տրամադրում է 5—6 ժամ, ազատ ժամերին ուսումնասիրում է նաև աշխարհի չեմպիոնների ստեղծագործությունները, վերլուծում նրանց խաղացած պարտիաները, կարդում մասնագիտական գրականություն: Տարեկան խաղում է մոտ 50 պարտիա: Ինչ խոսք, նրան շախմատային իր խորհրդավոր ճանապարհին օգնում են ծնողները՝ ֆիզիկամաթեմատիկական գիտությունների թեկնածու, առաջին կարգային հայրը՝ Էդուարդ Հակոբյանը, և մայրը՝ երաժշտության մասնագետ Լարիսա Լալայանը: Նրանք միշտ իրենց միակ զավակի հետ են, նրա կողքին, ոգևորում և քաջալերում են նրան յուրաքանչյուր մրցաշարից առաջ: Այդպիսին է նաև իր ուսուցիչը՝ աշխարհի չեմպիոն Գարի Գասպարովը: Երբ տարվա ընթացքում 2—3 անգամ Սովետական Միության մոտ 20 շնորհալի պատանիներ հավաքվում են Մոսկվայում՝ Գասպարով—Բոտվիննիկ շախմատի հեռակա դպրոցի պարապմունքներին մասնակցելու համար, աշխարհի չեմպիոնը հատուկ ուշադրությամբ է շրջապատում իր շնորհալի սանին: Աշխարհի չեմպիոնի կոչում նվաճելը պատանու համար որքան որ ուրախալի է, նույնքան էլ պարտավորեցնող է: Այն իրավունք է տվել եկող տարի մասնակցելու մինչև 20 տարեկանների աշխարհի առաջնությանը: Իսկ որպես հաղթող՝ մասնակցելու է նաև մինչև 16 տարեկանների աշխարհի առաջնության մրցաշարին, որը տեղի կունենա դարձյալ եկող տարի՝ Ավստրիայում: Բարձրագույն խմբի ուղեգիր ձեռք բերելու համար պատանին կմասնակցի նաև ՍՍՀՄ առաջնության ընտրական մրցաշարին:

Անշուշտ գուշակեցիք, որ այդ տաղանդավոր պատանին 14-ամյա դպրոցական, Երևանի № 122-րդ դպրոցի 9-րդ դասարանի աշակերտ ՎԼԱԴԻՄԻՐ ՀԱԿՈԲՅԱՆՆ է...

**ՍԱՐՈ ԳՅՈԴԱԿՅԱՆ**

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

# ԳՈՒՅՆԵՐԻ ԻՍՊԱՆԱԿԱՆ ՀՅՈՒՐՍԿԱԾԸ

## Տոլեդոյի փառքը

*Տոլեդո. Իսպանիայի նախկին մայրաքաղաքը։ «Նախկին» մակդիրն այսօր էլ շատ է համապատասխան քաղաքի տեսքին, որովհետև նոր ժամանակների շունչը համարյա չի կպել նրան։*

*Արվեստի գրքերում կամ ցուցահանդեսներում երբեմն նուրբ փորագրություններ են լինում՝ ասեղնածայր հատիչով նկարված։ Ուշադիր զննելիս շատ մանրամասներ ես տեսնում։ Ահա այդպիսի մի «փորագրություն» է փռված մեր դիմաց։*

*Բլուրների վրա կառուցված քաղաքը, մի քանի տակ պարիսպներով, տներ, կրդմինդրե տանիքներ, աշտամնավոր աշտարակներ, խաչակիր գմբեթներ... Տախո գետը հոսում է քաղաքի փեշերով, և ջուրն էր, որ անցյալ դարերում քաղաքը թշնամիների հարձակումներից ավելի լավ էր պաշտպանում, քան բազմաշերտ պարիսպները։ Տախո գետն ինչո՞ւ էր այդքան փրփրում։ Մենք կանգնած էինք բարձրում և չէինք տեսնում՝ սահանքների՞ պատճառով է, թե՞ մի այլ։ Ճայերն օրորվում էին փրփրաջրի վրա, մի նրբագիծ ևս ավելացնելով պատկերին։*

*Հռոմեական բարձրաթռիչ կամուրջը՝ գետի վրա, կառուցված 3-րդ դարում։ Եվ արաբական պալատական համալիրը՝ Ալկասարը, որի վրա է ընկել Տոլեդոյի քրիստոնեական նշանավոր տաճարի ստվերը։*

*Տոլեդոն Իսպանիայի հոգևոր կենտրոնն է։ Տաճարը, որ պետք է տեսնենք, երկու տարվա մեջ երկու շաբաթ է բաց լինում, այն էլ կարևոր արարողությունների համար, Հռոմի պապի թույլտվությամբ։ Առածն ասում է. Տոլեդոն կառուցված է յոթ բլուրների վրա, ինչպես Հռոմը։ Սակայն, Տոլեդոն ենթակա է Հռոմին՝ իբրև գերագույն հոգևոր կենտրոնի։*

*Էլ Գրեկոյի ծննդավայրը։ Տունը, որտեղ ծնվել և երեսունհինգ տարի ապրել է Էլ Գրեկոն, շուտով բացվելու է իբրև թանգարան։ Գերեզմանը, համեստ հուշաքարով, մի քանի քայլ է հեռու տնից։ Նկարիչն ապրել ու ճանաչված է եղել 16-րդ դարում։ Եվ հետո, ամբողջ երեք դար մոռացության է մատնվել։ 19-րդ դարում նորից հիշել են նրան, կրկին բացահայտել, այս անգամ այլևս չմոռանալու համար։*

*Վարագույրը մի կողմ են քաշում. բացվում է «Կոմս Օրգասի մահը» հռչակավոր նկարը։ Այն պահից, երբ լուսավորվեց պատկերը և էքսկուրսավարն սկսեց պատմությունը, ես հարմար ակնթարթի էի սպասում, հարցնելու՝ ե՞րբ է ավարտվել նկարի վերանորոգումը։*

*Մաքուր և ազնիվ գույների մի շքեղ փառաբանություն էր մեր դիմաց։ Նկարում պատկերված հուղարկավորները 16-րդ դարի անվանի մարդիկ էին՝ ապրած Տոլեդոյում. Ֆիլիպ Երկրորդ թագավորը, Սերվանտեսը, Էլ Գրեկոն... Նկարի կենտրոնական դեմքերից մեկը մի պատանի էր՝ Էլ Գրեկոյի որդին. նրա գրպանից երևացող թաշկինակի եզրին էր ստորագրել նկարիչը և դրել տարեթիվը՝ 1586։ Անցել է 400 տարի։ Նկարն ապրում է ու հուզում։ Ամենաազդեցիկն ի՞նչն էր այս նկարում։ Թվում էր՝ մենք ևս մասնակից ենք իշխան Օրգասի թաղմանը։ Մեծադիր նկար՝ իր բազմաթիվ ֆիգուրներով, և գույները՝ թարմ ու պայծառ, և արտահայտիչ դեմքերը՝ զուսպ ու վշտակիր, և տարազների թրթռուն ստվերները... էքսկուրսավարի վերջին նախադասությունը հետևյալն էր. «Նկարը վերանորոգված չէ, բայց թվում է, թե նկարիչը երեկ է վրձինը ցած դրել»։ Նա կանխեց մեր բոլորի մտքում պտտվող հարցը։ Եվ դրանով առավել ևս հաստատեց արվեստի անմահ էությունը։ Եվ երբ լույսը հանգցրին ու վարագույրով կրկին ծածկեցին, ես մտածեցի այն մարդկանց մասին, որ հետագա դարերում ևս պետք է հիանան ու զարմանան Էլ Գրեկոյի անմահ ստեղծագործությամբ։*

*Մինչև Տոլեդո գալը մենք տեսել էինք*



«Կոմս Օրգասի թաղումը» (հատված)

երգեհոն, որ ուներ ուղղահայաց և հորիզոնական փողեր։ Տոլեդոյի տաճարում հինգ երգեհոն է տեղադրված։ Նրանցից երկուսի փողերը ևս ոչ միայն ուղղահայաց են, այլև հորիզոնական։ Ինչո՞ւ է այսպես։ «Հաղթանակի և հանդիսավորության տպավորություն է թողնում,— ասում է բացատրողը,— երբ երկու երգեհոնները միասին են նվագում, տաճարն ամբողջությամբ ղողանջող երաժշտություն է դառնում։ Ինչքան տպավորիչ էին հորիզոնական փողերը։ Մի գծի վրա շարված կարծես պատրաստ, հրամանի էին սպասում՝ հնչեցնելու հաղթական հիմնը։

Տոլեդոյի տաճարը երկու ավանդատուն ուներ. դրանցից մեկում արծաթե և ոսկե գանձեր էին ցուցադրվում, մյուսում՝ աշխարհահռչակ նկարիչների գլուխգործոցներ։ Տիցիան, Ռաֆայել, էլ Գրեկո, Վան Դեյկ, Սուրբարան, Գոյա, Ռուբենս... Տարիներ առաջ, Ստոկհոլմի ազգային պատկերասրահում ես տեսել էի մեծադիր մի նկար՝ Գոյայից։ Չգիտեմ ինչու, հենց այդ նկարը դիտելիս էր, որ իմ գլխով տարօրինակ մի միտք անցավ. Նկարները պանդուխտ զավակներ են, ցրված աշխարհեաշխարհ։ Քանի՞ անգամ է փայլատակում հանճարը, ավելացնելով իր զավակների թիվը։ Նկարիչներ կան, որոնք վրձնել են հարյուրավոր անգնահատելի կտավներ։ Եվ չկա նկարիչ, որի գործերը միայն իր հայրենիքի թանգարանների զարդը լինի։ Նրկարներից շատերը կրակի ճարակ են դարձել, շատերը խեղդվել են ծովում կամ ընկել ավազակների ձեռքը, բայց նրանք, որ տեղ են հասել ու մշտական խարիսխ ձգել, իրենց հետ տարել են ծնողներից ժառանգած ազնիվ լույսն ու գույները, մարդկանց մխիթարելու, մարդկանց կյանքը գեղեցկացնելու միայն իրենց հատուկ ունակությունը։

Տոլեդոն սքանչելի էր։ Տոլեդոն դարերով պահել էր իր դեմքը։ Այն ժամանակվանից, երբ Դոն Կիխոտն ու Սանչո Պանսան արկածներով լի ճամփա էին բռնել դեպի Տոլեդո, ինչ-որ բան նրանցից դեռ մնացել էր քաղաքի սալահատակներին։ Օդը այստեղ թափանցիկ է ու մաքուր։ Երևի դա շատ լավ է նկարների համար։ Ավտոներ հատուկենտ են հանդիպում։ Փողոցներն ու մայթերը մաքրված են, ինչպես ոչ մի տեղ Իսպանիայում։ Ամբողջությամբ Տոլեդոն մաքրությամբ ու արվեստով է շնչում։

Դու չհասկացար, թե ինչու տերդ քեզ տարավ գյուղից դուրս և անտառի բացատում կապեց ծառից։ Հետո առաջդ դրեց ճղճղված մի գլխարկ և հրամայեց. «Պահպանիր»։ Դու զարմացար, որ այդ քրջոտ գլխարկը պահպանելու կարիք կա, բայց հրամայողը տերդ էր... Դու անտրտունջ նստեցիր գլխարկի կողքին և տխուր հայացքով հետևեցիր հեռացող տիրոջդ։ Երկար սպասեցիր, սակայն նա չվերադարձավ։ Գիշերը նայելով մութ ծառաբների կողմը՝ վախեցած վնգստում էիր, և դեռ լավ էր, որ մոտերքում գայլեր չկային։

Առաջինը քեզ նկատեց պստիկ Նունիկը և, ինչպես միշտ, ձեռքն անմիջապես մեկնեց, որ քար վերցնի... Հիմա կշպրտի, և քարը իսկի կես քայլ չթռած՝ կընկնի ցած...Այդպես էլ կա։ Անցյալ ամառ ցանկապատի վրայով անցել էր հարևանների բակը և նրանց շան՝ Ռեքսի վրա էր քար նետել։ Ռեքսը նման կատակներ չի սիրում, և եթե դու ժամանակին չհասնեիր, միջադեպը Նունիկի համար վատ վախճան կունենար։ Նունիկի փրկությունը վրադ էժան չնստեց. Ռեքսի սուր ժանիքները ծվատեցին ձախ ետնաթաթիդ ջլերը։




Երբ տերդ առավոտյան էլ չեկավ, դու անհանգստացար. գուցե նրան ինչ-որ վատ բա՞ն էր պատահել։ Փտած-փշրտված ատամներով կրծոտել կապանքները քեզ համար անչափ դժվար էր. ահագին ջանք ու ժամանակ պահանջվեց, և հիմա արագ, որքան թույլ են տալիս ծերացած մկանները, փոշոտ ճանապարհով վազում ես դեպի տուն, բերանիդ մեջ՝ ամուր սեղմած հնամաշ գլխարկը։

Վերջապես հասար։ Լավ գիտես, որ ցանկապատի աջ անկյունի տախտակը տեղից խախտված է։ Մնում է գլուխդ խոթես արանքը, սեղմես և արդեն տանն ես։

Բունդ գրավել են. Թուլիկն է, որին տերդ երեք օր առաջ բերեց... Համառ քոթոթ է, բնից դուրս գալ չի ուզում. արժանի փոխարինող կդառնա... Ինչ էլ շատ կաթ են լցրել... Կարմիր կովի կաթն է. համով է։

Ճռռաց դարպասը, և տերդ ընկերոջ ուղեկցությամբ մտավ բակ։ Դեռ քոթոթ ժամանակվանից՝ հենց տիրոջդ հոտն առնում ես, հուզմունքից գլուխդ ծանրանում, կախ է ընկնում։ Երևի դա էր պատճառը, որ անունդ Գոնչո դրեցին։ Այ, հիմա էլ գլուխդ կախ գցած, փոշոտ պոչդ տարուբերելով ու կամացուկ վնգստալով, վազեցիր մոտը... Կարոտել էիր։ Ոտքերի առջև դրեցիր քրջոտ գլխարկը և գգվեցիր փոշոտ կոշիկներին։ Նա մտազբաղ նայեց լորձոտված գլխարկին, հետո գորշ, ծալծլված ու թաց մռութիդ, և դառնալով ընկերոջը՝ ինչ-որ բան ասաց։

Տերդ պարանով կապում է վիզդ, և դու ձգում ես գլուխդ, որպեսզի նրա գործը հեշտանա։ Կապեց պրծավ և պարանի ծայրը տվեց ընկերոջը։ Հետո տնից դուրս բերեց որսորդական հրացանը։ Դա էլ հանձնեց ընկերոջը, և ընկերը՝ ձգելով պարանը,

քայլեց դեպի դարպասը։ Մի՞թե որսի... Չէ՞ որ նախկին ուժն ու հոտառությունը չունես... Ինչ արած, եթե տերդ այդպես է ուզում՝ ուրեմն պետք է գնաս։ Դու նրան երբեք չես ընդդիմացել. անտրտունջ և ազնվորեն ծառայել ես ահա արդեն մոտ տասնյոթ տարի։

Ծանոթ կածաններ են, ծանոթ ծառեր... Ինչքան հիշողություններ են կապված այս ամենի հետ... Ահա և ցորենի արտերը... Սակայն ինչո՞ւ չի արձակում պարանը։ Ինչո՞ւ է կապում ծառից... Թռչուններն օդում են՝ հրացանն ինչո՞ւ է քո վրա ուղղել...

Դու տագնապահար կրծոտեցիր պարանը՝ անընդհատ դեսուդեն շպրտվելով, և դա քեզ փրկեց. գնդակը միայն ուսդ վիրավորեց։ Մինչ նա վերստին կլցներ հրացանը՝ դու վերջապես կտրեցիր պարանը և փախար, փախար աղեկտուր կլանչելով և լիզելով արնոտ վերքդ... Երկրորդ փամփուշտն անցավ քեզանից շատ հեռու և շշալով մխվեց ծառարնի մեջ։

Կաղալով և շարունակ լիզելով վերքդ՝ վերջապես հասար գյուղ։ Առաջին տան բակից լսվեց հին ընկերոջդ՝ Քողարի տըխուր վնգստոցը։ Նա զգացել էր դժբախտությունդ և յուրովի ցավակցում էր... Քիչ անց լսվեց նաև Ջալոյի կլանչոցը...

Արյան հետքեր թողնելով տախտակների փշոտ եզրերին՝ դժվարությամբ ներս սողոսկեցիր ցանկապատի նեղ բացվածքից։ Նորից առաջինը նկատեց քեզ Նունիկը և անմիջապես ձեռքն առավ քարը։

Տերդ նստած է թթենու ստվերում, իսկ կողքին կանգնած է նա. արդեն տեղ է հասել, հրացանն էլ դեռ ձեռքին է։ Հիմա տերդ կտեսնի վերքդ ու ամեն բան կըհասկանա, կհասկանա, որ ընկերը չար մարդ է... Հիմա ծեծելով դուրս կվռնդի նրան։

Տեսավ... Բարկացած հայհոյելով հրացանն է խլում ընկերոջ ձեռքից... Այդպես էլ կա... Հիմա ծեծելով կվռնդի նրան... Սակայն ինչո՞ւ է հրացանը քո վրա պահել... Կատակում է երևի... Հը՞...

Կրծքիդ ձախ մասում բացված մութ խոռոչից քլքլալով հոսում է արյունդ։ Լիզելն անիմաստ է, տերդ անվրեպ է կրակում. դու դա գիտես։

Այլևս ցավ չես զգում, սակայն ոչ մի կերպ քիթդ չես կարողանում բարձրացնել արյան լճակի միջից... Սառչող հայացքիդ առջև խուլ դժժոցով պտտվում և աստիճանաբար մարում է արնագույն աշխարհը։

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# Ծովաքար

Լոկ քսաներորդ օրվա ավարտին
Ծովը ուզածս հանեց վերջապես։
Ալիքը թափով փշրվեց ափին,
Նահանջեց հապճեպ ու ասաց՝ սա քեզ...

Երբ քարը առա ես իմ ափի մեջ,
Քարի զրույցը դեռ ծովի հետ էր,
Որ իր խորքերում հղկել ու ահա՝
Բերել էր և իմ ոտքի տակ նետել։

Ո՞վ էր հաշվարկել դարեր, տարիներ,
Ամիսներ, օրեր, ժամեր ու վայրկյան,
Ցտկել, ճշգրտել ուղիները մեր
Մինչև պահը այս հրաշք հանդիպման...

Չգիտեմ։ Գուցե պետք էլ չէ բնավ
Պեղել դիպվածի խորքերը անհուն,
Որ իրենց անտես ծալքերում հիմա
Մեր բախտի բազում թելերն են պահում։

Կարևորը այս քարն է ի վերջո,
Անաղարտ, մաքուր ու անզուգական՝
Ողողված ծովի ահեղ մռունչով,
Անվախճան շնչով տիեզերական...

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



ԱԼԲԵՐՏՈ ՄՈՐԱՎԻԱ

# Զաիր գետի հոսանքի ուղղությամբ

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵԶՕՂԼՅԱՆԻ

Միլիարդ տարի առաջ, Զաիրի անտառներից մեկում, տարիքի և իմաստնության բեռն ուսերին առած մի Գոր Իլլա, որի մի ոտքն արդեն գերեզմանում էր, որդուն՝ Գոր Իլլիկին ասաց.

— Ամբողջ կյանքումս քրտինք թափեցի, բայց ոչինչ չկարողացա ետ գցել քեզ համար. ազնիվների ճակատագիրն է սա: Չունեցածս ունեցվածքի փոխարեն քեզ մի թանկարժեք խորհուրդ տամ. եթե ուզում ես կյանքում հաջողակ լինել, հոսանքի ուղղությամբ գնա: Հիշի՛ր, հոսանքի ուղղությամբ՝ միշտ և բոլոր դեպքերում: Գոր Իլլիկին ասաց.

— Ի՞նչ է նշանակում հոսանքի ուղղությամբ:

Հայրը թե՝

— Նշանակում է մեծամասնության հետ: Ապա նայիր մեր Զաիր գետին: Այս ամենն, ինչ լողում է մակերեսին, հոսանքի ուղղությամբ է գնում:

— Իսկ ո՞ւր է գնում:

— Մինչև նպատակին հասնելը:

— Իսկ նպատակը ի՞նչ է:

Այս անգամ Գոր Իլլան մի քիչ լռեց, հետո ասաց.

— Նպատակը, նպատակը... Դե, դա այն է, ինչ շատ երկար որոնելուց հետո գտնում ես անտառում: Եթե գտածդ խնձոր է, ուրեմն նպատակդ խնձորն է եղել, եթե բանան է, ապա՝ բանանը:

— Իսկ եթե ոչինչ չե՞ս գտնում:

— Ուրեմն՝ նպատակդ էլ ոչինչ է եղել:

Գոր Իլիկն այստեղ հարցրեց.

— Էլ բան ունե՞ս ինձ ասելու:

Գոր Իլլան պատասխանեց.

— Այո, մի քանի խորհուրդ էլ առածների տեսքով տամ: «Շիտակ նստենք, ծուռ խոսենք»: «Կատուն թե մսի գնաց ու բղավեց՝ էն տեսնելն է, որ կտեսնես»: «Սատանի չարուխը չի մաշի»: «Լավ է մի ձու այսօր, մի հավ էլ վաղը»: «Հարամ մազը չի կտրվի, հալալ գերանը կկոտրվի: «Խոսքն արծաթ է, լռությունը՝ ոսկի, կծու խոսքը՝ լուսնոսկի»: «Ստի ոտքերը երկա՜ր-երկա՜ր են»:

Այսքանն ասելով ու մի բան էլ ավելացնելով, Գոր Իլլան մեռավ, այսինքն՝ այն ծառից, որի վրա ապրում էր, վայր ընկավ ճահճի մեջ ու այնտեղ էլ մնաց: Միաժամանակ անց Գոր Իլլիկը գնաց մոր մոտ ու ասաց.

— Մայրիկ, ես գնում եմ:

— Ո՞ւր ես գնում:

— Գնում եմ հասնեմ նպատակիս:

— Ո՞նց ես գնում:

— Հոսանքի ուղղությամբ:

— Լավ,— հոգոց հանեց մայրը,— հուսով եմ, նպատակդ սպիտակեղենի որևէ խանութի մոտ կլինի: Ինձ երկու սավան է հարկավոր, երկու բարձի երես, մի սփռոց և ութ անձեռոցիկ:

Գոր Իլլիկը խոստացավ, որ նպատակին հասնելուն պես կառնի այդ ամենն ու քայլերն ուղղեց դեպի Զաիր գետը: Իսկ գետը հեռու էր: Ասենք, մի քանի հազար ծառից ծառ ցատկ կլիներ: Այսպես ցատկոտելով, հատապտուղ ու ջահել շիվեր ուտելով, Գոր Իլլիկը հասավ նպատակին, որը տվյալ դեպքում ծառերի արանքից հազիվ նշմարվող խորհրդավոր փայլուն ջուրըն էր: Քայլը, այսինքն՝ ցատկն արագացնելով, նա դուրս ցցվեց տերևների միջից ու տեսավ գետն իր ամբողջ անընդգրկելիությամբ, ինչպես որ հայրն էր բազմիցս պատմել: Բայց հիմա նրա առջև բարդ խնդիր էր ծառացել. ջրի հայելու պես փայլուն անծայրածիր լայնարձակությունը անշարժ էր, և այդ անշարժությունը թույլ չէր տալիս հասկանալ՝ որ կողմն է հոսում գետը՝ ա՞ջ, թե՞ ձախ: Ու եթե չգիտես, թե որ կողմն է հոսում գետը, ինչպե՞ս, ուրեմն, գնաս հոսանքի ուղղությամբ: Գոր Իլլիկը երկար ու անօգուտ մրտածելուց հետո դիմեց ավազի վրա արևկող անող Կոկորդ Իլոսին.

— Բարի եղեք, ասացեք խնդրեմ, ո՞ւր է հոսում գետը:

Կոկորդ Իլոսն աչքերը ճպճպացրեց ու խուլ ձայնով պատասխանեց.

— Դա ի՞նչ հարց է: Հետևիր հոսանքին:

Գոր Իլլիկը շփոթված դիմեց մինչև քթանցքերը ջրի մեջ սուզված Գետ Ա. Զիուն: Եվ հետևյալ պատասխանն ստացավ.

— Օ՜, անուշիկս, ո՞ւր որ ես եմ գնում:

— Այսի՞նքն:

— Հետևիր Գետ Ա. Զիուն:



Մնում էր միայն հարցն ուղղել այն պատկառելի Մարա Բուին, որ խորհում էր ծառի կատարին: Մարա Բուն պատասխանելուց առա- մի քիչ մտածեց, հետո ասաց.

— Խորապես ուսումնասիրված և հաստատված ուսմունքների համաձայն գրեթե հաստատ ապացուցված է, որ գետը հոսում է այն կողմ, որ կողմ որ թվում է:

Այստեղ արդեն վերջնականապես հուսահատված Գոր Իլլիկը նստեց ափին ու սկսեց սպասել. որևէ բան պետք է պատահե՞ր, թե չէ: Եվ իրոք, ահա գետի վրա երևաց իրար կապված գերաններից պատրաստված մի լաստ: Լաստի վրա մի քանի սև մարմիններ էին երևում, որ աշխույժ ծռմռվում էին թմբուկի նվագակցությամբ. պարում էին: Հետո Գոր Իլլիկը նկատեց, որ լաստը շարժվում է, այստեղից հետևում է, որ գնում է հոսանքի ուղղությամբ: Այսքանը բավական էր որոշում ընդունելու համար: Թռավ ջուրը, լողալով հասավ լաստին, բարձրացավ: Պարզվեց, որ այդ սև մարմինները Գան Անների ընտանիք էր. հայրը, մայրը և երկու տղան, որոնք առոք-փառոք ճամփորդում էին գետով՝ հանպատրաստից սարքած իրենց նավով: Ուրախ ու հյուրասեր լինելով, Գան Անները բարի գալուստ մաղթեցին Գոր Իլլիկին, ուտելիք տվեցին: Հետո սկսվեցին հարցերը: Գոր Իլլիկը հարցրեց.

— Դուք հոսանքի ուղղությա՞մբ եք գնում:

— Միշտ:

— Բոլոր դեպքերո՞ւմ:

— Առանց բացառության:

— Իսկ ո՞ւր եք գնում:

Հայր Գան Անը գլուխը քորեց ու պատասխանեց.

— Եսիմ, դեսուդեն, ինչքան գիտեմ՝ մինչև նպատակին հասնելը:

Գոր Իլլիկին ավելին իմանալ պետք չէր: Այդ օրվան հաջորդեցին ուրիշ շատ օրեր, բոլորն էլ նույնքան երջանիկ: Գան Անները միայն երգում էին, պարում, ուտում, խըմում: Ի՜նչ երանելի կյանք: Ի՜նչ անհոգ կյանք: Գոր Իլլիկը երգում էր, պարում, ուտում, խմում և մտքում անընդհատ փառք տալիս հորը այդ հրաշալի խորհրդի համար՝ միշտ գնալ հոսանքի ուղղությամբ:

Բայց ահա մի դժբախտ օր գետը սրընթաց գահավիժեց: Հոսքն ուժեղացավ, ջուրը մոլեգնեց: Ի՞նչ պատահեց: Հեչ, հասել էին Ջաբրի վտանգավոր սահանքներին: Բայց Գան Աններին դա չէր անհանգըս-

տացնում: Լաստի վրա մի տակառ արմավենու գինի ունեին, խմում էին ու խմում, հետո էլ երգում.

Երբ հոսանքով ես գնում,
Ապահով ես միշտ լինում.
Դու բոլորի հետ ես:
Հակառակը թե գնաս՝
Մեն-մենակ դու կմնաս,
Ու ոչ-ոքի պետք չես:

Գոր Իլլիկն էլ կուզենար հավատալ, թե հոսանքի ուղղությամբ գնալիս ոչինչ չպետք է պատահի, բայց փաստերը, դժբախտաբար, հակառակն էին հաստատում: Այժմ լաստը թռչում էր սուր-սուր քարերի ու փրփրոտ ջրապտույտների արանքներով, մի սահանքին հաջորդում էր մյուսը, և յուրաքանչյուր սահանքն անցնելով, հարբած Գաճ Անները ոռնում էին հրճվանքից: ոԳր Իլլիկը ամուր բռնել էր խոհանոցի ծխնելույզից, և դա փրկեց նրան:

Ամենասարսափելի սահանքներից մեկի վրայով անցնելիս լաստը դիպավ քարին, գերաններն իրար կապող պարանը կտրվեց, և Գաճ Աններր, Գոր Իլլիկն ու ամեն ինչ հայտնվեցին ջրում: Գոր Իլլիկն, աստված գիտի, թե քանի անգամ գլուխկոնծի տվեց ջրի տակ: Հետո ջուրը հետզհետե հանդարտվեց և Գոր Իլլիկին վեր շպրտեց: Նա դուրս ցցվեց ջրից ու նրա առջև բացվեց ջրի կապույտ անհունը:

Ի՞նչ աներ: Գոր Իլլիկը քիչ հեռվում նկատեց ալիքների վրա ճոճվող լաստի գերաններից մեկը, հասավ ու բարձրացավ վրան: Բարձրանալուն պես հասկացավ, որ իրադրությունը շատ լուրջ է, եթե չասենք՝ անհուսալի: Իրոք, ինչպես պարզվեց, ծովում ոչ թե մի հոսանք էր միայն, ինչպես գետում, այլ շատ, անչափ շատ, և այդ պատճառով անհնարին էր հասնել նպատակին: Գերանը մեկ աջ էր գնում, մեկ՝ ձախ, մեկ՝ առաջ, մեկ՝ ետ: Մյուս կողմից էլ ծովը գետի պես ափեր չուներ, սահման չուներ, կենտրոնն ամեն տեղ էր և ոչ մի տեղ: Գոր Իլլիկը գուշակեց, որ եթե օգնություն չհասնի, շատ շուտ սովամահ կլինի ոչ մի ուղղությամբ չգնացող այդ գերանի վրա:

Հայտնի չէ, թե գերանի վրա ինչքան ժամանակ անցկացրեց Գոր Իլլիկը, սնվելով միայն ձկնիկներով ու ջրիմուռներով: Գերանը դեսուդեն էր ճոճվում ալիքների վրա, կանգ առնում, նորից շարժվում: Օրը փոխվում էր գիշերվա, գիշերը նորից օր էր դառնում: Թվում էր, թե հոսանքի ուղղությամբ այդ շարժումը երբեք չէր վերջանալու: Իսկ ծովն արդեն ոչ թե կապույտ էր, այլ գորշ, նախկինի պես արևն այլևս չէր տաքացնում, շարունակ ամպամած էր, անձրևներ էին, և աֆրիկյան արևին սովոր Գոր Իլլիկը մրսում էր: Ու մի օր էլ...

Մի օր երկաթե մի նավ, որի ծխնելույզից սև-սև ամպեր էին դուրս նետվում, կանգ առավ գերանից ոչ հեռու, նավակ իջեցրին ջուրն ու ծայրահեղ հյուծված, ուժասպառ Գոր Իլլիկին բարձրացրին նավ, տարան-տեղավորեցին նավախցիկում:

Անմիջապես ողջունելու եկավ նավապետը: Գոր Իլլիկն արդեն տաքացել էր ու կշտացել: Նավախցիկը տաք էր, նրան բանան ու արքայախնձոր էին հյուրասիրել: Շատ ուրախ դիմեց նավապետին:

— Շնորհակալ եմ կյանքս փրկելու համար: Բայց ասացեք խնդրեմ, որտե՞ղ եմ ես:

— Անգլիական շոգենավի վրա: Այս պահին մենք հասել ենք Թեմզայի գետաբերանը և բարձրանում ենք դեպի Լոնդոնի նավահանգիստ:

Գոր Իլլիկը բացականչեց.

— Ուրեմն հոսանքին հակառա՞կ ենք գնում:

— Իհարկե:

— Այդ ինչպե՞ս:

— Շատ հասարակ: Մեր մեքենաների շնորհիվ, որ շարժիչ ուժ են արտադրում:

— Իսկ հոսանքին հակառակ շարժումը շարունակելով, ես ո՞ւր կհասնեմ:

— Քեզ կհանձնենք Լոնդոնի գազանանոցի տնօրենին, և նա բոլոր հարմարություններով մի երկաթե վանդակ կհատկացնի քեզ: Անկասկած, գազանանոցի լավագույն նմուշներից մեկը կլինես:

Մենակ մնալով, խեղճ Գոր Իլլիկն էլ չկարողացավ լացը զսպել. իր նամփորդությունն ավարտվելու էր գազանանոցի վանդակում: Երկար լաց լինելուց հետո Գոր Իլլիկը գրիչը ձեռքն առավ ու հետևյալ նամակը գրեց մորը. «Սիրելի մայրիկ, մինչև հիմա կտորի ոչ մի խանութ չի հանդիպել: Տեսնեմ, կհանդիպի՞ Լոնդոնում, գազանանոցի մոտակայքում, թե՞ ոչ:

Իսկ հիմա գուցե կցանկանաս իմանալ, թե ինչ պատահեց ինձ: Ահա թե ինչ. գնացի հոսանքի ուղղությամբ ու հանդիպեցի խութի, մնացի առանց հոսանքի ու քիչ էր մնում սովից ու ցրտից սատկեի: Գնացի հոսանքին հակառակ ու հայտնվեցի վանդակում»:

Իտալերենից թարգմանեց
ԳԱԳԻԿ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԸ

ԱՐԱՐԱՏ ԾՂԻԿՅԱՆ

# Արեգակն էլ է աստղ







Արեգակնային համակարգի գլխավոր մարմինը Արեգակն է։ Մենք դա զգում ենք ամեն օր. չէ՞ որ լույսը և ջերմությունը ստանում ենք Արեգակից։ Պարունակելով համակարգի ամբողջ նյութի ավելի քան 99.9 տոկոսը և հանդիսանալով ճառագայթման միակ աղբյուրը, Արեգակը, բնականաբար, տնօրինում է իր շրջակայքում տեղի ունեցող բոլոր երևույթները։

Ապշեցուցիչ է Արեգակի լուսատվությունը, այսինքն՝ բոլոր ուղղություններով ճառագայթված էներգիայի հզորությունը. այն վայրկյանում կազմում է $4\times10^{26}$ ջոուլ՝ կամ $4\times10^{23}$ կիլովատ։ Դրանից Երկրի լուսավորված կողմի վրա ընկնում է մոտավորապես $10^{14}$ կիլովատ, այսինքն՝ մոտ մեկ միլիարդերորդական մասը։ Համեմատության համար ասենք, որ այժմ ողջ մարդկության կողմից ծախսվող էներգիայի հզորությունը կազմում է մոտ $10^{10}$ կիլովատ։ Իսկ երկրաբանական և մի շարք այլ տվյալներից հետևում է, որ վերջին 2—3 միլիարդ տարվա ընթացքում արեգակնային էներգիայի մակարդակը չի կրել զգալի փոփոխություններ։ Այսպիսով, ակընհայտ է դառնում չափազանց կարևոր մի փաստ՝ Արեգակը էներգիայի պաշարներով արտակարգ լի, պարզապես անըսպառ մի պահեստ է։ Անմիջապես հարց է ծագում՝ ինչո՞ւ է այդպես։ Բնության հայտնի օրենքներն են, որ պայմանավորել են տիեզերքի նյութի և էներգիայի զգալի մասի կուտակումը Արեգակի նման աստղերում։ Կա աստղերի մի տեսակ, հայտնի

«անկայուն աստղեր» անվամբ, որոնք որպեսզի չկործանվեն որպես լուսատու, պետք է ինչ-որ ձևով ազատվեն նյութի և էներգիայի իրենց պարունակած ավելցուկից։ Արեգակը կայուն աստղ է, նրա ընդերքում ջերմամիջուկային ռեակցիաների հետևանքով անջատվում է այնքան էներգիա, որը բավական է նրա մակերեսի ջերմաստիճանը մշտապես՝ մի քանի միլիարդ տարի շարունակ, 6000 աստիճանի վրա պահելու համար։ Արեգակը միշտ գտնվում է հավասարակշիռ վիճակում, նրա բոլոր կետերը՝ մակերեսից մինչև կենտրոն, մշտապես գտնվելով ձգողականության ուժի, գազային ճնշման, ճառագայթման, մագնիսական, էլեկտրական և այլ ու այլ ուժերի ազդեցության տակ, զարմանալի կերպով պահպանում են իրենց հավասարակշռությունը, այսինքն՝ ցաքուցրիվ չեն լինում։

Որպեսզի ավելի լավ հասկանանք Արեգակի էներգիայի աղբյուրների բնույթը, պատկերացնենք մի պահ, երբ Արեգակի տարբեր մասերի միջև ձգողականության ուժերը չեն համակշռում։ Արեգակնային նյութը կցրվի տարածության մեջ։ Հայտնի է, որ Արեգակը առաջացել է մոտ 5 միլիարդ տարի առաջ՝ նախնական սառը, շատ նոսր գազափոշային հսկա ամպից, տևական սեղմման հետևանքով՝ մինչև Արեգակի ներկա չափերին հասնելը։ Սեղմմանը զուգընթաց ամպը սկսել է տաքանալ, բարձրացել է ջերմաստիճանը նորանոր կազմավորվող Արեգակի կենտրոնում, և սկսվել է էներգիայի անջատումը։ Եվ եկել է մի պահ, որ Արեգակը «ցրելու» վրա ծախսվող աշխատանքը համարժեք է դարձել այդ ամպի սեղմման հետևանքով անջատված էներգիային։ Իսկ դա, ինչպես ցույց են տալիս հաշվարկները, բավական է, որպեսզի «նախաարեգակի» խորքային շերտերը տաքանան մինչև 10 միլիոն և ավելի աստիճան, այսինքն՝ այնքան, որքան անհրաժեշտ է ջերմամիջուկային ռեակցիաների «միանալու» համար։

Իրականում աստղաառաջացման երևույթը շատ ավելի բարդ է, քան նկարագրված սխեման, քիչ չեն չպարզաբանված հարցերը, սակայն կարևորն այն է, որ այդ սխեման չի հակասում բնության հայտնի օրենքներին։

Արեգակի կենտրոնական մասում ֆիզիկական պայմանները զգալիորեն տարբերվում են մակերևույթի վրա եղած պայմաններից։ Օրինակ, ջերմությունը կենտրոնում հավասար է 14 միլիոն աստիճանի, ճնշումը՝ 400 միլիարդ մթնոլորտի, իսկ խտությունը 20 անգամ ավելի է, քան երկաթի խտությունը։ Հենց նման պայմաններում էլ կատարվում են ջերմամիջուկային ռեակցիաները։ Արեգակի այդ կենտրոնական մասը, որի շառավիղը 4 անգամ է փոքր ամբողջ Արեգակի շառավղից (700000 կմ), պարունակում է ամբողջ զանգվածի կեսը ($10^{30}$ կգ), և հենց այդտեղ էլ տեղավորված է նրա ջերմամիջուկային «ռեակտորը», որը գործում է անընդմեջ արդեն 5 միլիարդ տարի և այդքան էլ կգործի։

Ի դեպ, ջերմամիջուկային սինթեզը՝ դա մեր ապագայի էներգետիկան է, այն կփոխարինի ներկայիս ատոմային էլեկտրակայաններին, որոնք գործում են ուրանի և պլուտոնիումի տրոհման սկզբունքի վրա, ուստի և անվտանգ չեն։ Մինչդեռ ջերմամիջուկային սինթեզը բացարձակապես անվտանգ է, քանի որ այս դեպքում ռադիոակտիվ թափոններ բնավ չեն առաջանում։

Այնուամենայնիվ, հետաքրքիր է իմանալ, թե ինչպես են հաշվում Արեգակի ճառագայթման տևողությունը, որտեղի՞ց է գալիս այդ 5—10 միլիարդ տարին։ Պատասխանելու համար պետք է իմանալ նախ Արեգակի միջուկային էներգիայի պաշարի չափը և ապա այն բաժանել Արեգակի լուսատվության վրա։ Փորձենք որոշել այդ պաշարի չափը։ Հայտնի է, որ ջերմամիջուկային ռեակցիաների ժամանակ, երբ ջրածնի ատոմներից սինթեզվում են հելիումի ատոմներ, ռեակցիային մասնակցող ջրածնի ամեն 1 կիլոգրամից 8/1000-րդ մասը անցնում է էներգիայի $E=mc^2$ հանրահայտ բանաձևով ($c=300000$ կմ/վրկ—լույսի արագությունն է, իսկ m-ը—նյութի զանգվածն է)։

Արեգակի զանգվածի մոտավորապես 73 տոկոսը կազմում է ջրածինը (հելիումը՝ 25 տոկոս, մնացած էլեմենտները՝ մոտ 2 տոկոս), այդ դեպքում, ընդունելով, որ կծախսվի ջրածնի միայն 10 տոկոսը (0.1 մասը), միջուկային էներգիայի պաշարի համար կստանանք հետևյալ արժեքը՝ $E=0,1\times0,008\times0,7\times2\times10^{30}\times9\times10^{16}\sim10^{44}$ ջոուլ։ Այդ պաշարը կբավարարի $10_{44}/4\times10^{26}=25\times10^{16}$ վայրկյան, կամ 25 միլիարդ տարի։ Բայց հնարավոր են սինթեզի և այլ ռեակցիաներ՝ այլ էլեմենտների մասնակցությամբ։ Այդ դեպքում Արեգակը ներկա հզորությամբ ի վիճակի է ճառագայթել մի քանի տասնյակ միլիարդ տարի։

Իհարկե, սա շատ մոտավոր թիվ է: Իրականում այս ամենը շատ ավելի բարդ է: Ջերմամիջուկային ռեակցիաների հետևանքով փոխվում է խորքային շերտերի քիմիական բաղադրությունը: Դա կհանգեցնի Արեգակի արտաքին շերտերի հավասարակշռության խախտման՝ Արեգակը կսկսի լայնանալ մինչև նոր հավասարակշիռ վիճակ, ու «գործի կդրվեն» նոր տիպի, ոչ ջրածնային ջերմամիջուկային ռեակցիաներ, և այսպես անընդհատ: Հաշվարկները ցույց են տալիս, որ այդ նոր վիճակում Արեգակը այնքան կմեծանա, որ Երկրի ուղեծիրը ամբողջությամբ կմըտնի նրա մթնոլորտի մեջ... Դեղին թզուկ աստղը՝ Արեգակը, կդառնա կարմիր հսկա աստղ, նրա արտաքին շերտերի ջերմաստիճանը կիջնի մինչև 3000: Իսկ ի՞նչ կլինի Երկրի հետ: Մի՞թե այն կկործանվի 5 միլիարդ տարի հետո: Հազիվ թե, չէ՞ որ երկրացիներն էլ ձեռքները ծալած չեն նստի...

Արժե այդ կապակցությամբ նշել այստեղ, որ աստղագիտության մեջ կա այսպես կոչվող «երկնագույն թափառաշրջիկների» առեղծվածը: Այն հայտնագործվել է վերջին տարիներին և ահա թե ինչ է իրենից ներկայացնում: Մեզնից մի քանի հազար լուսատարի հեռավորության վրա գտնվող մի շարք աստղակույտերում գոյություն ունեն աստղեր, որոնց տարիքը (ինչպես և ամբողջ աստղակույտի տարիքը) հասնում է մոտ 10 միլիարդ տարվա: Այդ տարիքը որոշվում է աստղագիտական ստույգ եղանակով և կասկած չի հարուցում: Բայց այդ աստղերը «կարողացել են» մնալ թեկուզ տարիքին չհամապատասխանող գույնով, մինչդեռ նույն աստղակույտում բոլոր անդամներն էլ ունեն տարիքից բխող որոշակի համապատասխանություն՝ գույնի (այսինքն՝ ջերմաստիճանի) և չափերի միջև:

Կարելի՞ է, արդյոք, ելնելով այդ փաստերից, պնդել, որ «երկնագույն թափառաշրջիկների» մոլորակային համակարգերի երևակայական բնակիչներն են «ազդել» իրենց լուսատուի վրա, ստիպելով, որ նա «նախատեսված շրջանակից» դուրս չգա: Պնդել, իհարկե, չի կարելի, քանի դեռ ոչ բոլոր տեսական հարցերն են պարզաբանված՝ վերը բերված անհամապատասխանության վերաբերյալ: Հետագա թե տեսական, թե դիտողական ուսումնասիրությունները, անշուշտ, հնարավորություն կտան լուծելու այդ հետաքրքիր առեղծվածը:




Ամսվա առաջին օրը Սոնան իր եղբորը՝ Հակոբիկին, հարցրեց.

— Շաբաթվա ի՞նչ օր է այսօր:

— Իմացիր ինքդ,— պատասխանեց եղբայրը,— ես միայն կասեմ, որ այս ամսվա մեջ զույգ ամսաթվով երեք կիրակի կա:

Մի փոքր մտածելուց հետո քույրը գըտավ իր հարցի պատասխանը և ասաց.

— Ուզում ես ցույց տալ, թե գիտունի՞կ ես: Դե, ուրեմն զգույշ եղիր, ես խոստանում եմ այսօր քեզ խաբել:

Ամբողջ օրը Հակոբիկը անհանգիստ էր՝ չխաբվի հանկարծ: Իսկ երբ երեկոյան պառկում էին քնելու, վերջապես հաղթանակած ու զվարթ բացականչեց՝ դիմելով քրոջը:

— Տեսա՞ր, որ քեզ չհաջողվեց ինձ խաբել:

— Եթե ընդունեիր, որ քեզ խաբել եմ,— խորամանկ ժպիտով ասաց Սոնան,— և կատարած կլինեի խոստումս, իսկ եթե չես ընդունում, ուրեմն՝ խոստումս հենց առավոտյան եմ ես կատարել՝ ասելով, թե քեզ խաբելու եմ:

Իսկ դուք, սիրելի դպրոցականներ, կարո՞ղ եք.

1) որոշել, թե շաբաթվա ինչ օր էր այդ օրը.

2) բացատրել, թե ինչպես Սոնային հաջողվեց կատարել իր խոստումը

3) կռահել (սա ամենադժվար հարցն է), թե որ ամսվա առաջին օրն էր դա:

ՌՈՒԲԵՆ ՍԻՐՈՒՆՅԱՆ



Գլխավոր խմբագիր՝ **ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.։

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.։

**ԻՆԴԵՔՍ՝ 77806** **ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.**